Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

I օր.

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
եվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 7 (14)

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն «Խ. Հայաստան»
ԵՐԵՎԱՆ—1937

Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք.

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ



№ 7 (14)




ՀԿ(բ)ԿԿԿ հրատարակչություն—«Խ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ — 1937

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագիր՝ ԳԻՆՈ ՇԱՂԳԱՄՅԱՆ
Պատ. քարտուղար՝ Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Սրբ.՝ Մ. Սուքյան և Մ. Գեվորգյան
Հրատարակություն № 10, պատվեր № 562
Գլավլիտի լիազոր Շ—1247
Տիրաժ 10.000

Պետհրատի տպարան, Յերևան

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԹԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՅԵՎ ՏՐՈՑԿԻՍՏԱԿԱՆ ՈՒ ԱՅԼ ՅԵՐԿԵՐԵՍԱՆԻՆԵՐԻՆ ԼԻԿՎԻԴԱՑԻԱՅԻ ՅԵՆԹԱՐԿԵԼՈՒ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

**ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻ զեկուցումը ՀԱՄԿ(բ)Կ Կենտկոմի Պլենումում, 1937 թվականի մարտի 3-ին**

ԸՆԿԵՐՆԵ՛Ր.

Պլենումում լսված զեկուցումներից և րանց շուրջը ծավալված մտքերի փոխանակությունից յերևում է, որ մենք այս–

[illegible]եղ գործ ունենք [illegible] [illegible]կան փաստերի հետ։

Առաջին՝ օտարերկրյա պետությունների գործակալների վնասարարական և դիվերսիոն-լրտեսական աշխատանքը, վորոնց թըվում բավականաչափ ակտիվ դեր եյին խաղում տրոցկիստները, այս կամ այն չափով շոշափեց մեր բոլոր կամ համարյա բոլոր կազմակերպությունները, ինչպես տնտեսական, այնպես և վարչական ու կուսակցական։

Յերկրորդ՝ օտարերկրյա պետությունների գործակալները, այդ թվում տրոցկիստները, սողոսկել եյին վոչ միայն ստորին կազմակերպությունների մեջ, այլև վորոշ պատասխանատու պոստերի։

Յերրորդ՝ մեր մի քանի ղեկավար ընկերներ, ինչպես կենտրոնում, այնպես և տեղերում, վոչ միայն չկարողացան տեսնել այդ վնասարարների, դիվերսանտների, լրտեսների ու մարդասպանների իսկական դեմքը, այլև այն աստիճան անհոգ, բարեհոգի ու միամիտ դուրս յեկան, վոր վոչ սակավ դեպքերում իրենք ոժանդակեցին օտարերկրյա պետությունների գործակալ-



ների անցնելուն՝ այս կամ այն պատասխանատու պոստերը։

Սրանք են այն յերեք անվիճելի փաստերը, վորոնք բնականաբար բղխում են պլենումի զեկուցումներից և նրանց շուրջը ծավալված մտքերի փոխանակությունից։

I

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՆՀՈԳՈՒԹՅՈՒՆ

Ինչո՞վ բացատրել, վոր մեր ղեկավար ընկերները, վորոնք ունեն ամեն տեսակ հակակուսակցական ու հակախորհրդային հոսանքների դեմ մղված պայքարի հարուստ փորձ, տվյալ դեպքում դուրս յեկան այն աստիճան միամիտ և կույր, վոր չկարողացան տեսնել ժողովրդի թշնամիների իսկական դեմքը, չկարողացան ճանաչել գառան մորթի հագած գայլերին, չկարողացան պոկել նրանց դիմակը։

Կարելի՞ յե արդյոք պնդել, վոր օտարերկրյա պետությունների ԽՍՀՄ-ի տերիտորիայի վրա գործող գործակալների վնասարարական և դիվերսիոն-լրտեսական աշ-

նալ ինչ վոր անսպասելի ու չեղած–չտեսնըված մի բան: Վոչ, այդ չի կարելի ասել: Այդ մասին են խոսում վերջին տաս տարվա վնասարարական ակտերը՝ ժողովրդական տնտեսության զանազան ճյուղերում, սկսած Շախտիի շրջանից, ակտեր, վորոնք արձանագրված են պաշտոնական փաստաթղթերի մեջ:

Կարելի՞ յե արդյոք ասել, վոր վերջին ժամանակներս մենք չենք ունեցել վորևե նախազգուշացնող ազդանշաններ և նախազգուշացնող ցուցումներ՝ ֆաշիզմի տրոցկիստական – զինովյեվական գործակալների վնասարար, լրտեսական կամ տեռորիստական գործունեության վերաբերյալ: Վոչ, այդ չի կարելի ասել: Այդպիսի ազդանշաններ յեղել են, և բոլշևիկներն իրավունք չունեն մոռանալ դրանց մասին:

Ընկեր Կիրովի չարանենգ սպանությունն առաջին լուրջ նախազգուշացումն եր, վորը խոսում եր այն մասին, թե ժողովրդի թշնամիները յերկերեսանիություն կանեն և յերկերեսանիություն անելով քողարկվելու յեն բոլշևիկի, կուսակցականի դիմակի



տակ, ամեն գնով վստահություն ձեռք բերելու և մեր կազմակերպությունների մեջ իրենց համար ճանապարհ բաց անելու համար:

«Լենինգրադի կենտրոնի» դատավարությունը, այնպես ինչպես «Զինովյեվի–Կամենեվի» դատավարությունը, նոր հիմնավորում տվեց ընկեր Կիրովի չարանենգ սպանության փաստից բխող դասերի համար:

«Զինովյեվական– տրոցկիստական բլոկի» դատավարությունն ընդարձակեց նախորդ դատավարությունների դասերը, ակնբախորեն ցույց տալով, վոր զինովյեվականներն ու տրոցկիստներն իրենց շուրջն են համախմբում բոլոր թշնամի բուրժուական տարրերին, վոր նրանք դարձել են գերմանական վոստիկանական պահնորդային բաժնի լրտեսական ու դիվերսիոն–տեռորիստական գործակալությունը, վոր յերկերեսանիությունն ու դիմակավորումը զինովյեվականների ու տրոցկիստների միակ միջոցն ե հանդիսանում մեր կազմակերպությունների մեջ սողոսկելու համար, վոր զգաստությունն ու քաղաքական սրատեսությունն ամենից ճշմարիտ միջոցն են

հանդիսանում այդպիսի սողոսկումը կանխելու համար, զինովյևյան-տրոցկիստական չայկան լիկվիդացիայի յենթարկելու համար։

ՀամԿ(բ)Կ Կենտրոնական Կոմիտեն ընկեր Կիրովի չարանենգ սպանության առթիվ 1935 թվականի հունվարի 18-ին իր ուղարկած փակ նամակում կուսակցական կազմակերպություններին վճռականորեն նախազգուշացնում եր քաղաքական բարեհոգությունից և քաղքենիական բերանբացությունից։ Փակ նամակում ասված է՝

«Պետք է վերջ տալ օպորտունիստական բարեհոգությանը, վորը բղխում է այն սխալ յենթադրությունից, թե մեր ուժերի աճմանը զուգընթաց թշնամին իբր թե գնալով ավելի ձեռնասուն և անվնաս է դառնում։ Այդ յենթադրությունն արմատապես սխալ է։ Դա աջ թեքման բղկոցն է, թեքում, վորն աշխատում է բոլորին ու ամենքին համոզել, թե թշնամիները կամացուկ կներսողան սոցիալիզմի մեջ, թե նրանք վերջ ի վերջո իսկական սոցիալիստներ կդառնան։ Բոլշևիկների գոր-



ծը չէ նիրհել դափնիների վրա և բերանբացություն անել։ Մեզ վոչ թե բարեհոգություն է հարկավոր, այլ զգաստություն, իսկական բոլշևիկյան հեղափոխական զգաստություն։ Պետք է հիշել, վոր վորքան ավելի անհուսալի յեն թշնամիների դրությունը, այնքան ավելի սիրով են դիմելու նրանք ծայրահեղ միջոցների, վորպես դատապարտվածների միակ միջոցների՝ խորհրդային իշխանության դեմ իրենց մղած պայքարում։ Պետք է հիշել այդ և զգաստ լինել»։

Տրոցկիստական – զինովյևյան բլոկի լրտեսական-տեռորիստական գործունեյության առթիվ 1936 թվականի հուլիսի 29-ին գրած իր փակ նամակում ՀամԿ(բ)Կ Կենտրոնական Կոմիտեն նորից կոչ եր անում կուսակցական կազմակերպություններին՝ ցուցաբերել առավելագույն զգաստություն, կարողանալ ճանաչել ժողովրդի թշնամիներին, վորքան էլ լավ դիմակավորված լինեն նրանք։ Փակ նամակում ասված է՝

«Այժմ, յերբ ապացուցված է, վոր տրոցկիստական-զինովյևյան դաղան-

ները խորհրդային իշխանության դեմ մղվող պայքարում միացնում են մեր յերկրի աշխատավորության բոլոր ամենադաժան ու վոխերիմ թշնամիներին՝ լրտեսներին, պրովոկատորներին, դիվերսանտներին, սպիտակ-գվարդիականներին, կուլակներին և այլն, յերբ մի կողմից այդ տարրերի և մյուս կողմից տրոցկիստների ու զինովյեվականների միջև ջնջվել են բոլոր սահմանները,—մեր բոլոր կուսակցական կազմակերպությունները, կուսակցության բոլոր անդամները պետք է հասկանան, վոր կոմունիստների զգաստությունն անհրաժեշտ է ամեն մի ճակատամասում և ամեն մի իրադրության մեջ: Յուրաքանչյուր բոլշևիկի անկապտելի հատկությունը ներկա պայմաններում պետք է լինի կուսակցության թշնամուն ճանաչել կարողանալը, վորքան ել լավ դիմակավորված լինի նա»:

Նշանակում է՝ ազդանշաններ ու նախազգուշացումներ յեղել են:

Ի՞նչ բանի եյին կոչ անում այդ ազդանշաններն ու նախազգուշացումները:



Դրանք կոչ եյին անում այն բանի, վորպեսզի վերացվի կուսակցական-կազմակերպչական աշխատանքի թուլությունը և կուսակցությունը դարձվի մի անառիկ ամրոց, վորտեղ վոչ մի յերկերեսանի չկարողանար մուտք գործել:

Դրանք կոչ եյին անում այն բանի, վորպեսզի վերջ տրվի կուսակցական-քաղաքական աշխատանքի թերագնահատմանը և վճռական շրջադարձ կատարվի այդ աշխատանքն ամեն կերպ ուժեղացնելու կողմը, քաղաքական զգաստությունն ուժեղացնելու կողմը:

Յեվ ի՞նչ: Փաստերը ցույց տվին, վոր մեր ընկերներն ավելի քան դժվարությամբ են յուրացրել ազդանշաններն ու նախազգուշացումները:

Այդ մասին պերճախոս կերպով վկայում են կուսակցական փաստաթղթերի ստուգման և փոխանակման կամպանիայի վերաբերյալ բոլորին հայտնի փաստերը:

Ինչո՞վ բացատրել այն, վոր այդ նախազգուշացումներն ու ազդանշանները պատշաճ ներգործություն չունեցան:

Ինչո՞վ բացատրել այն, վոր մեր կու-

ակցական ընկերները, չնայած հակախոր-
ըրդային տարրերի դեմ պայքարելու փոր-
ձառությանը, չնայած մի ամբողջ շարք
ապախազդուշացնող ազդանշաններին և նա-
խազգուշացնող ցուցումներին, քաղաքակա-
նապես կարճատես դուրս յեկան ժողովրդի
թշնամիների վնասարար և լրտեսական-դի-
վերսիոն աշխատանքի հանդեպ։

Թերևս մեր կուսակցական ընկերներն ա-
վելի վա՞տ են դարձել, քան առաջ եյին,
պակա՞ս գիտակից ու կարգապահ են դար-
ձել։ Ո՛չ, իհարկե, ո՛չ։

Թերևս նրանք սկսել են վերասերվե՞լ։
Ընդհակա՛ռակը՝ ոչ։ Այդպիսի յենթադրությունը
զուրկ է վորևե հիմքից։

Ուրեմն ինչո՞ւմն է բանը։ Ո՞րտեղից են
այդ բերանբացությունը, անհոգությունը,
բարեհոգությունը, կուրությունը։

Բանը նրանումն է, վոր մեր կուսակցա-
կան ընկերները, տարված լինելով տնտե-
սական կամպանիաներով և վիթխարի հա-
ջողություններով՝ տնտեսական շինարա-
րության ճակատում, պարզապես մոռացել
են այն մի քանի շատ կարևոր փաստերի



մասին, վորոնց մասին բոլշևիկներն իրա-
վունք չունեն մոռանալու։ Նրանք մոռացել
են մի հիմնական փաստի մասին՝ ԽՍՀՄ-ի
միջազգային դրության ասպարեզից և չեն
նկատել յերկու շատ կարևոր փաստեր, վո-
րոնք ուղղակի առնչություն ունեն կուսակ-
ցական տոմսով քողարկվող և վորպես բոլ-
շևիկ դիմակավորվող ներկա վնասարար-
ների, լրտեսների, դիվերսանտների ու
մարդասպանների հետ։

# II

## ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ՇՐՋԱՊԱՏՈՒՄԸ

Այդ ի՞նչ փաստեր են, վորոնց մասին
մոռացել են կամ վորոնք պարզապես չեն
նկատել մեր կուսակցական ընկերները։

Նրանք մոռացել են այն մասին, վոր
խորհրդային իշխանությունը հաղթել է աշ-
խարհիս միայն մի վեցերորդ մասում, վոր
աշխարհիս հինգ վեցերորդ մասը կազմում
են կապիտալիստական պետություններ[ի]
տիրապետությունները։ Նրանք մոռացել

...ությունը գտնվում է կապիտալիստական շրջապատման պայմաններում։ Մեզանում ընդունված է շաղակրատել կապիտալիստական շրջապատման մասին, բայց չեն ուզում խորանալ, թե ի՞նչ բան է դա—կապիտալիստական շրջապատումը։ Կապիտալիստական շրջապատումը՝ դա դատարկ ֆրազ չէ, դա շատ ռեալ և անախորժ մի յերևույթ է։ Կապիտալիստական շրջապատումը—դա նշանակում է, վոր կա մի յերկիր—Խորհրդային Միությունը—վորն իր մոտ սոցիալիստական կարգեր է հաստատել և, բացի դրանից, կան շատ յերկրներ—բուրժուական յերկրներ—վորոնք շարունակում են կապիտալիստական կյանք վարել և վորոնք շրջապատում են Խորհրդային Միությունը, առիթի սպասելով, վորպեսզի հարձակվեն նրա վրա, ջախջախեն նրան կամ, համենայն դեպս, ջլատեն նրա ուժը և թուլացնեն նրան։

Այդ հիմնական փաստի մասին են մոռացել մեր ընկերները։ Բայց չէ՞ վոր հենց դա յե վոր վորոշում է կապիտալիստական



շրջապատման և Խորհրդային Միության փոխհարաբերությունների հիմքը։

Վերցնենք, օրինակ, բուրժուական պետությունները։ Միամիտ մարդիկ կարող են կարծել, թե նրանց միջև գոյություն ունեն բացառապես բարի հարաբերություններ, վորպես միատիպ պետությունների միջև։ Բայց այդպես կարող են կարծել միմիայն միամիտ մարդիկ։ Իրականում նրանց փոխհարաբերություններն ավելի քան հեռու յեն բարի-դրացիական հարաբերություններ լինելուց։ Ապացուցված է, վորպես յերկու անգամ յերկու—չորս, վոր բուրժուական պետությունները միմյանց թիկունքն են ուղարկում իրենց լրտեսներին, վնասարարներին, դիվերսանտներին, յերբեմն էլ մարդասպաններին, նրանց առաջադրանք են տալիս՝ բույն դնել այդ պետությունների հիմնարկներում ու ձեռնարկություններում, ստեղծել այնտեղ իրենց ցանցը և «անհրաժեշտության դեպքում» պայթեցնել նրանց թիկունքները՝ վորպեսզի թուլացնեն նրանց և ջլատեն նրանց զորությունը։ Այդպես է բանը ներկայումս։ Բանն այդպես է յեղել և անցյալում։ Վերց-

նենք, օրինակ, Եվրոպայի՝ Նապոլեոն առաջինի ժամանակվա պետությունները: Ֆրանսիայում այդ ժամանակները վխտում եյին լրտեսներն ու դիվերսանտները՝ ռուսների, գերմանացիների, ավստրիացիների, անգլիացիների բանակից: Եվ, ընդհակառակը, Անգլիան, գերմանական պետությունները, Ավստրիան, Ռուսաստանն իրենց թիկունքում այն ժամանակ ունեյին վոչ պակաս թվով լրտեսներ ու դիվերսանտներ՝ ֆրանսիական բանակից: Անգլիայի գործակալները յերկու անգամ մահափորձ են կատարել Նապոլեոնի կյանքի դեմ և մի քանի անգամ վոտքի յեն հանել Վանդեայի գյուղացիներին Ֆրանսիայում՝ Նապոլեոնի կառավարության դեմ: Իսկ ի՞նչ եր ներկայացնում Նապոլեոնի կառավարությունը: Բուրժուական մի կառավարություն, վորը խեղդեց ֆրանսիական հեղափոխությունը և պահպանեց հեղափոխության միայն այն արդյունքները, վորոնք ձեռնտու եյին խոշոր բուրժուազիային: Ի՞նչ խոսք, վոր Նապոլեոնի կառավարությունը պարտքի տակ չեր մնում իր



հարևաններին և նույնպես ձեռնարկում եր իր դիվերսիոն միջոցառումները: Այդպես եր անցյալում, 130 տարի առաջ: Այդպես է բանը ներկայումս, Նապոլեոն առաջինից 130 տարի անց: Այժմ Ֆրանսիայում և Անգլիայում վխտում են գերմանական լրտեսներն ու դիվերսանտները և, ընդհակառակը, Գերմանիայում, իրենց հերթին, գործում են անգլո-ֆրանսիական լրտեսներն ու դիվերսանտները: Ամերիկայում վխտում են ճապոնական լրտեսներն ու դիվերսանտները, իսկ Ճապոնիայում՝ ամերիկականները:

Այսպես է բուրժուական պետությունների փոխհարաբերությունների օրենքը:

Հարց է ծագում, թե ինչո՞ւ բուրժուական պետությունները խորհրդային սոցիալիստական պետությանը պետք է վերաբերվեն ավելի մեղմ ու ավելի բարի-դրացիական, քան իրար նույնատիպ բուրժուական պետություններին: Ինչո՞ւ պետք է նրանք Խորհրդային Միության թիկունքներն ուղարկեն ավելի պակաս թվով լրտեսներ, վնասարարներ, դիվերսանտներ ու մարդասպաններ, քան ուղարկում են իրենց ազգակից բուրժուական պետությունների թի-

կունքները: Վորտեղի՞ց եք դուք այդ վերցրել: Մարքսիզմի տեսակետից ավելի ճիշտ չի՞ լինի արդյոք յենթադրել, վոր բուրժուական պետությունները Խորհրդային Միության թիկունքները պետք է ուղարկեն կրկնակի ու յեռակի ավելի վնասարարներ, լրտեսներ, դիվերսանտներ ու մարդասպաններ, քան ամեն մի բուրժուական պետության թիկունքները:

Պարզ չէ՞ արդյոք, վոր քանի գոյություն ունի կապիտալիստական շրջապատումը՝ մեզանում գոյություն են ունենալու վնասարարներ, լրտեսներ, դիվերսանտներ ու մարդասպաններ, վորոնց մեր թիկունքներն են ուղարկում ոտարերկրյա պետությունների գործակալները:

Այս ամենի մասին մոռացել են մեր կուսակցական ընկերները, և մոռանալով այդ մասին՝ հանկարծակիի յեկած յեղան:

Ահա թե ինչու ճապոնա-գերմանական ֆաշիստական պահնորդային բաժնի տրոցկիստական գործակալների լրտեսական-դիվերսիոն աշխատանքը մեր վորոշ ընկերների համար բոլորովին անսպասելի բան դուրս յեկավ:



III

## ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՏՐՈՑԿԻԶՄԸ

Այնուհետև: Պայքար մղելով տրոցկիստական գործակալների դեմ՝ մեր կուսակցական ընկերները չեն նկատել, նրանց աչքից վրիպել է, վոր այժմյան տրոցկիզմն արդեն այն չէ, ինչ նա յեղել է, ասենք սրանից 7—8 տարի առաջ, վոր տրոցկիզմը և տրոցկիստներն այդ ժամանակում յենթարկվել են լուրջ եվոլյուցիայի, վորն արմատապես փոխել է տրոցկիզմի դեմքը, վոր, նկատի ունենալով այդ, տրոցկիզմի դեմ մղվող պայքարն էլ, նրանց դեմ պայքարելու մեթոդներն էլ, պետք է արմատապես փոխվեն: Մեր կուսակցական ընկերները չեն նկատել, վոր տրոցկիզմը դադարել է բանվոր դասակարգի ներսում քաղաքական հոսանք լինելուց, վոր բանվոր դասակարգի ներսում քաղաքական հոսանք լինելուց, ինչպիսին եր նա սրանից մի 7–8 տարի առաջ, տրոցկիզմը վեր է ածվել այնպիսի վնասարարների, դիվերսանտների, լրտեսների ու մարդասպանների մերկապարանոց ու անսկզբունք մի բանդայի, վորոնք գործում են ոտա-

երկրյա պետությունների հետախուզական օրգանների առաջադրանքներով:

Ի՞նչ բան է քաղաքական հոսանքը բանվոր դասակարգի ներսում: Քաղաքական հոսանքը բանվոր դասակարգի ներսում — դա մի այնպիսի խումբ կամ կուսակցություն է, վորն ունի իր վորոշակի քաղաքական կերպարանքը, պլատֆորմը, ծրագիրը, վորը չի թագցնում և չի կարող թագցնել իր հայացքները բանվոր դասակարգից, այլ ընդհակառակը, իր հայացքները պրոպագանդ է անում բացե ի բաց ու ազնվորեն, բանվոր դասակարգի աչքերի առջև, վորը չի վախենում իր քաղաքական դեմքը բանվոր դասակարգին ցույց տալուց, չի վախենում իր իսկական նպատակներն ու անելիքները բանվոր դասակարգի առջև ցուցադրելուց, այլ ընդհակառակը, բարձրացրած յերեսկալով գնում է բանվոր դասակարգի մեջ նրա համար, վորպեսզի նրան համոզի իր հայացքների ճշմարիտ լինելը: Տրոցկիզմն անցյալում, մի 7–8 տարի սրանից առաջ, այդպիսի քաղաքական հոսանքներից մեկն է յեղել բանվոր դասակարգի ներսում, ճշմարիտ է, հակալենինյան և այդ պատճառով էլ խորապես սխալ, բայց այնուամենայնիվ քաղաքական հոսանք:

Կարելի՞ յե արդյոք ասել, վոր այժմյան տրոցկիզմը, ասենք 1936 թվականի տրոցկիզմը, քաղաքական հոսանք է հանդիսանում բանվոր դասակարգի ներսում: Վո՛չ, այդ բանը չի կարելի ասել: Ինչո՞ւ: Վորովհետև ժամանակակից տրոցկիստները վախենում են իրենց իսկական դեմքը բանվոր դասակարգին ցույց տալուց, վախենում են նրա առջև իրենց իսկական նպատակներն ու խնդիրները բաց անելուց, խնամքով թագցնում են բանվոր դասակարգից իրենց քաղաքական ֆիզիոնոմիան, վախենալով վոր յեթե բանվոր դասակարգն իմանա իրենց իսկական մտադրությունները՝ կնզովի նրանց վորպես խորթ մարդկանց և նրանց կքշի իրենից: Դրանով էլ իսկապես բացատրվում է այն, վոր տրոցկիստական աշխատանքի հիմնական մեթոդն այժմ հանդիսանում է վոչ թե իրենց հայացքների բացահայտ ու ազնիվ պրոպագանդը բանվոր դասակարգի մեջ, այլ իրենց հայացքների քողարկումը, իրենց հակառակորդների հայացքների ստո

րաքարշ ու քծնողական դավաճանումը,
իրենց սեփական հայացքների փարիսե-
ցիական ու կեղծ կոխկրտումը ցեխի մեջ։
1936 թվականի դատավարության ժա-
մանակ, յեթե հիշում եք, Կամենևն ու
Զինովյևը վճռականորեն ժխտում եյին,
վոր իրենք ունեն վորևէ քաղաքական
պլատֆորմ։ Նրանք լիակատար հնարավո-
րություն ունեյին դատավարության ժա-
մանակ ծավալելու իրենց քաղաքական
պլատֆորմը։ Սակայն նրանք այդ չարին,
հայտարարելով, վոր իրենք վոչ մի քա-
ղաքական պլատֆորմ չունեն։ Վոչ մի
կասկած չի կարող լինել, վոր նրանք
յերկուսն էլ ստում եյին, ժխտելով իրենց
պլատֆորմ ունենալը։ Այժմ նույնիսկ
կույրերը տեսնում են, վոր նրանք ունեցել
են իրենց քաղաքական պլատֆորմը։ Բայց
նրանք ինչո՞ւ եյին ժխտում իրենց վորևէ
քաղաքական պլատֆորմ ունենալը։ Վո-
րովհետև նրանք վախենում եյին իրենց
իսկական քաղաքական դեմքը բաց
անելուց, նրանք վախենում եյին
ԽՍՀՄ-ում կապիտալիզմի ռեստավրացիա-
յի իրենց իսկական պլատֆորմը ցուցա-
դրելուց, վախենալով, վոր այդպիսի

պլատֆորմը զզվանք կառաջացնի բանվոր
դասակարգի մեջ։
1937 թվականի դատավարության ժա-
մանակ Պյատակովը, Ռադեկը և Սոկոլնի-
կովը կանգնեցին այլ ուղու վրա։ Նրանք
չեյին ժխտում, վոր տրոցկիստներն ու զի-
նովյևականներն ունեն քաղաքական պլ-
լատֆորմ։ Նրանք ընդունեցին, վոր իրենք
ունեն վորոշակի քաղաքական պլատֆորմ,
ընդունեցին և այդ պլատֆորմը ծավալե-
ցին իրենց ցուցմունքների մեջ։ Բայց ծա-
վալեցին այն վոչ թե նրա համար, վոր կոչ
անեն բանվոր դասակարգին, կոչ անեն ժո-
ղովրդին՝ պաշտպանելու տրոցկիստական
պլատֆորմը, այլ նրա համար, վոր անի-
ծեն և նշավակեն այն, վորպես մի հակա-
ժողովրդական և հակապրոլետարական
պլատֆորմ։
Կապիտալիզմի ռեստավրացիա, կոլ-
տնտեսությունների ու խորհտնտեսու-
թյունների լիկվիդացիա, շահագործման
սիստեմի վերականգնում, դաշինք Գեր-
մանիայի ու Ճապոնիայի ֆաշիստական
ուժերի հետ՝ Խորհրդային Միության դեմ
պատերազմը մոտեցնելու համար, հանուն
պատերազմի և խաղաղության քաղաքա-

կանության դեմ պայքարելու համար, Խորհրդային Միության տերիտորիալ անդամահատում՝ հանձնելով Ուկրաինան գերմանացիներին, իսկ Պրիմորյեն՝ ճապոնացիներին, Խորհրդային Միության ռազմական պարտության նախապատրաստում՝ նրա վրա թշնամի պետությունների հարձակվելու դեպքում և՝ վորպես այդ խնդիրներն իրագործելու միջոց՝ վնասարարություն, դիվերսիա, անհատական տեռոր խորհրդային իշխանության ղեկավարների դեմ, լրտեսություն հօգուտ գերմանական – ճապոնական ֆաշիստական ուժերի— այս է ներկա տրոցկիզմի քաղաքական այն պլատֆորմը, վորը ծավալեցին Պյատակովը, Ռադեկը և Սոկոլնիկովը: Հասկանալի յե, վոր այդպիսի պլատֆորմը տրոցկիստները չեյին կարող չթաքցնել ժողովրդից, բանվոր դասակարգից: Յեվ նրանք այն թաքցնում եյին վոչ միայն բանվոր դասակարգից, այլև տրոցկիստական մասսայից, և վոչ միայն տրոցկիստական մասսայից, այլ նույնիսկ ղեկավար տրոցկիստական վերնախավից, վորը բաղկացած եր 30–40 հոգուց կազմված մարդկանց փոքր խըմ-



բից: Յերբ Ռադեկն ու Պյատակովը Տրոցկուց թույլատվություն են պահանջել գումարելու տրոցկիստների 30–40 հոգուց բաղկացած փոքրիկ կոնֆերանս՝ այդ պլատֆորմի բնույթի մասին ինֆորմացիա տալու համար, Տրոցկին այդ արգելել է նրանց, ասելով, թե նպատակահարմար չէ պլատֆորմի իրական բնույթի մասին ասել տրոցկիստների նույնիսկ փոքրիկ խմբակին, վորովհետև նման «ոպերացիան» կարող է պառակտում առաջացնել:

«Քաղաքական գործիչներ», վորոնք թաքցնում են իրենց հայացքները, իրենց պլատֆորմը, վոչ միայն բանվոր դասակարգից, այլև տրոցկիստական մասսայից, և վոչ միայն տրոցկիստական մասսայից, այլև տրոցկիստների ղեկավար վերնախավից — այս է ժամանակակից տրոցկիզմի ֆիզիոնոմիան:

Բայց դրանից բխում է, վոր ժամանակակից տրոցկիզմն այլևս չի կարելի անվանել քաղաքական հոսանք բանվոր դասակարգի մեջ:

Ժամանակակից տրոցկիզմը քաղաքական հոսանք չէ բանվոր դասակարգի մեջ, այլ այնպիսի վնասարարների, դիվերսանտ-

ների, հետախույզների, լրտեսների, մարդասպանների մի անսկզբունք և գաղափարազուրկ բանդա, բանվոր դասակարգի վոխերիմ թշնամիների մի բանդա, վորոնք վարձով գործում են տարբերկրյա պետությունների հետախուզական օրգանների մոտ:

Այս է տրոցկիզմի վերջին 7—8 տարվա եվոլյուցիայի անվիճարկելի արդյունքը:

Այս է տարբերությունն անցյալի տրոցկիզմի և այժմյան տրոցկիզմի միջև:

Մեր կուսակցական ընկերների սխալն այն է, վոր նրանք չեն նկատել անցյալի տրոցկիզմի և այժմյան տրոցկիզմի այդ խոր տարբերությունը: Նրանք չեն նկատել, վոր տրոցկիստներն արդեն վաղուց դադարել են գաղափարական մարդիկ լինելուց, վոր տրոցկիստներն արդեն վաղուց դարձել են մեծ ճանապարհի ավազակներ՝ ընդունակ ամեն մի գարշելիության, ընդունակ ամեն մի նողկալիության, մինչև իսկ լրտեսության և իրենց հայրենիքին ուղղակի դավաճանելու, միայն թե կարողանան վնասություն անել խորհրդային պետությանը և խորհրդային իշխանու-



թյանը: Նրանք այդ չնկատեցին, ուստի և չկարողացան իր ժամանակին վերակառուցվել վորպեսզի պայքար մղեն տրոցկիստների դեմ նոր ձևով, ավելի վճռաբար:

Ահա թե ինչու տրոցկիստների վերջին տարիների նողկալիությունները մեր մի քանի կուսակցական ընկերների համար կատարելապես անակնկալ հանդիսացան:

Այնուհետև: Վերջապես, մեր կուսակցական ընկերները չեն նկատել այն, վոր եյական տարբերություն կա մի կողմից ներկա վնասարարների ու դիվերսանտների միջև, վորոնց մեջ ֆաշիզմի տրոցկիստական գործակալները բավական ակտիվ դեր են խաղում, և մյուս կողմից Շախտիի ժամանակների վնասարարների ու դիվերսանտների միջև:

Առաջինը: Շախտիցիները և արդյունաբերական կուսակցության անդամները մեզ համար բացահայտորեն խորթ մարդիկ եյին: Նրանք մեծ մասամբ նախկին ձեռնակատերեր եյին, հին տերերի ժամանակվա նախկին կառավարիչներ, հին փայատիրական ընկերությունների նախկին անդամներ, կամ պարզապես հին բուրժուա-

կան մասնագետներ, վորոնք քաղաքակա-նապես բացահայտորեն թշնամի եյին մեզ: Մեր մարդկանցից վոչ վոք չեր տարակուսում այդ պարոնների քաղաքական դեմքի խնդրում: Ասենք, չախտիցիներն իրենք էլ չեյին թաքցնում իրենց թշնամական վերաբերմունքը խորհրդային հասարակարգի նկատմամբ: Չի կարելի նույնն ասել այժմյան վնասարարների ու դիվերսանտների, տրոցկիստների մասին: Այժմյան վնասարարներն ու դիվերսանտները, տրոցկիստները, դրանք մեծ մասամբ գրպանում կուսակցական տոմս ունեցող կուսակցական մարդիկ են,— հետեվաբար, ձեվականորեն վոչ խորթ մարդիկ: Յեթե հին վնասարարները մեր մարդկանց դեմ եյին գնում, ապա նոր վնասարարները, ընդհակառակը, քծնում են մեր մարդկանց առջև, գովաբանում են մեր մարդկանց,ստորաքարշություն են անում նրանց առջև՝ նրա համար, վորպեսզի ամեն կերպ վստահություն ձեռք բերեն: Ինչպես տեսնում եք, տարբերությունն եյական ե:

Յերկրորդ: Շախտիցիների և արդյունաբերական կուսակցության անդամների ուժն այն եր, վոր նրանք ...վազ կամ պակաս չափով տիրապետում եյին անհրաժեշտ տեխնիկական գիտելիքների, մինչդեռ մեր մարդիկ, վորոնք չունեյին այդպիսի գիտելիքներ, հարկադրված եյին սովորել նրանցից: Այդ հանգամանքը Շախտի ժամանակաշրջանի վնասարարներին տալիս եր մեծ առավելություն, նրանց հնարավորություն եր տալիս վնասարարություն անելու ազատ ու անարգել, նրանց հնարավորություն եր տալիս մեր մարդկանց խաբել տեխնիկապես: Նույնը չեն այժմյան վնասարարները, տրոցկիստները: Այժմյան վնասարարները տեխնիկական առավելություններ չունեն մեր մարդկանց համեմատությամբ: Ընդհակառակը, տեխնիկապես մեր մարդիկ ավելի պատրաստված են, քան այժմյան վնասարարները, քա... տրոցկիստները: Շախտի ժամանակաշրջանից մինչև մեր որերն անցած ժամանակվա ընթացքում մեզ մոտ աճել են տասնյակ հազարավոր խսկական, տեխնիկապես կոփված բոլշևիկյան կադրեր: Կարելի յե հիշատակել հազարավոր ու տասնյակ հազարավոր տեխնիկապես աճած բոլշևիկյան դե-

կավարների, վորոնց համեմատությամբ այդ բոլոր Պլյատակովներն ու Լիվշիցները, Շեստովներն ու Բոգուսլավսկիները, Մուրալովներն ու Դրոբնիսները դատարկ չաղակրատներ և խոխաներ են տեխնիկական պատրաստության տեսակետից: Այդ դեպքում ի՞նչի մեջ է ժամանակակից վնասարարների, տրոցկիստների ուժը: Նրանց ուժը կուսակցական տոմսի մեջ, կուսակցական տոմս ունենալու մեջ է: Նրանց ուժն այն է, վոր կուսակցական տոմսը քաղաքական վստահություն է տալիս նրանց և նրանց համար մուտք է բաց անում մեր բոլոր հիմնարկների ու կազմակերպությունների մեջ: Նրանց առավելությունն այն է, վոր ունենալով կուսակցական տոմսեր և իրենց ձևացնելով վորպես խորհրդային իշխանության բարեկամներ, նրանք խաբում են մեր մարդկանց քաղաքականապես, չարաչահում եյին վստահությունը, սուս-փուս վնասարարություն եյին անում և մեր պետական գաղտնիքները հայտնում Խորհրդային Միության թշնամիներին: Մի «առավելություն», վորը կասկածելի յե իր քա[illegible] բարոյական արժեքով, բայց [illegible] ձնայ[illegible]

[illegible]ասելի

[illegible]

նիվ «առավելություն» է: Այդ «առավելությամբ» էլ հենց բացատրվում է այն հանգամանքը, վոր տրոցկիստական վնասարարները, վորպես կուսատոմսավոր մարդիկ, վորոնք մուտք ունեյին մեր հիմնարկների ու կազմակերպությունների բոլոր տեղերը, ուղղակի գյուտ հանդիսացան ոտարերկրյա պետությունների հետախուզական որգանների համար:

Մեր վորոշ կուսակցական ընկերների սխալը նրանումն է կայանում, վոր նրանք չեն նկատել, չեն հասկացել հին և նոր վնասարարների միջև, չախտինների ու տրոցկիստների միջև յեղած այդ ամբողջ տարբերությունը, և չնկատելով այդ, չըկարողացան ժամանակին վերակառուցվել նոր վնասարարների դեմ նոր ձևով պայքար մղելու համար:

## IV
## ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՍՏՎԵՐՈՏ ԿՈՂՄԵՐԸ

Սրանք են մեր միջազգային ու ներքին դրության բնագավառից վերցված հիմնական փաստերը, վորոնց մասին մոռացել են կամ վորոնք չեն նկատել մեր շատ կուսակցական ընկերներ:

Ահա թե ինչու մեր մարդիկ հանկարծակիի յեկան վնասարարության և դիվերսիայի գործում վերջին տարիներս տեղի ունեցած դեպքերից:

Կարող են հարց տալ, թե ինչո՞ւ մեր մարդիկ չեն նկատել այդ ամենը, ինչո՞ւ նրանք մոռացել են այդ ամենի մասին:

Վորտեղի՞ց առաջ յեկան այդ բոլորը՝ մոռացկոտությունը, կուրությունը, անհոգությունը, բարեհոգությունը:

Այդ մի որգանական սխալ չե՞ արդյոք մեր մարդկանց աշխատանքի մեջ:

Վո՛չ, այդ որգանական սխալ չէ: Այդ— ժամանակավոր յերևույթ է, վորը կարող է արագորեն լիկվիդացիայի յենթարկվել մեր մարդկանց կողմից վորոշ ջանքերի առկայության դեպքում:

Ուրեմն ինչո՞ւմն է բանը:

Բանն այն է, վոր մեր կուսակցական ընկերները վերջին տարիներում ամբողջապես կլանված են յեղել տնտեսական աշխատանքով, նրանք ծայր աստիճանի տարված են յեղել տնտեսական հաջողություններով, և տարված լինելով այդ ամբողջ գործով, մոռացել են մնացած ամեն



բանի մասին, յերեսի վրա յեն թողել բոլոր մնացածը:

Բանն այն է, վոր տարված լինելով տնտեսական հաջողություններով, նրանք այդ գործի մեջ սկսեցին տեսնել ամեն բանի սկիզբն և վերջը: Իսկ այնպիսի գործերին, ինչպիսիք են Խորհրդային Միության միջազգային դրությունը, կապիտալիստական շրջապատումը, կուսակցության քաղաքական աշխատանքի ուժեղացումը, պայքարը վնասարարության դեմ և այլն, պարզապես սկսեցին ուշադրություն չդարձնել, յենթադրելով, վոր այդ բոլոր հարցերը յերկրորդական կամ նույնիսկ յերրորդական գործ են ներկայացնում:

Հաջողությունները և նվաճումներն իհարկե մեծ գործ են: Մեր հաջողությունները սոցիալիստական շինարարության բնագավառում՝ իսկապես հսկայական են: Բայց հաջողությունները, ինչպես և աշխարհում ամեն բան, ունեն նաև իրենց ստվերոտ կողմերը: Քաղաքականության մեջ քիչ փորձառություն ունեցող մարդկանց մոտ մեծ հաջողությունները և մեծ նվաճումները հաճախ ծնում են ան-

հողություն, բարեհոգություն, ինքնագոհություն, չափից դուրս ինքնավստահություն, գոռոզամտություն, պարծենկոտություն: Դուք չեք կարող ժխտել, վոր վերջին ժամանակներս մեզանում անթիվ ու անհամար պարծենկոտներ են յերևացել: Զարմանալի չե, վոր սոցիալիստական շինարարության բնագավառում ձեռք բերված մեծ ու լուրջ հաջողությունների այս իրադրության մեջ ստեղծվում են պարծենկոտության տրամադրություններ, մեր հաջողությունների հանդիսավոր մանիֆեստացիայի տրամադրություններ, ստեղծվում են մեր թշնամիների ուժերը թերագնահատելու տրամադրություններ, մեր ուժերը գերագնահատելու տրամադրություններ, և վորպես այդ ամենի հետևանք — յերևան ե գալիս քաղաքական կուրությունը:

Այստեղ յես պետք ե մի քանի խոսք ասեմ հաջողությունների հետ կապված վտանգների մասին, նվաճումների հետ կապված վտանգների մասին:

Դժվարությունների հետ կապված վըտանգների մասին մենք փորձով գիտենք: Ահա արդեն մի քանի տարի յե, վոր պայ-



քար ենք մղում այդ տեսակ վտանգների դեմ և պետք ե ասել՝ վոչ առանց հաջողության: Վոչ կայուն մարդկանց մոտ դժվարությունների հետ կապված վտանգները հաճախ առաջ են բերում վհատություն, իր ուժերին չհավատալու տրամադրություններ, հոռետեսության տրամադրություններ: Յեվ, ընդհակառակը, այնտեղ, վորտեղ գործը վերաբերում ե դժվարություններից բխող վտանգները հաղթահարելուն, մարդիկ կոփվում են այդ պայքարում և պայքարից դուրս են գալիս վորպես իրոք պողպատակուռ բոլշևիկներ: Այս ե դժվարությունների հետ կապված վտանգների բնությունը, սրանք են դժվարությունների հաղթահարման արդյունքները:

Բայց կան այլ տեսակ վտանգներ՝ հաջողությունների հետ կապված վտանգներ, նվաճումների հետ կապված վտանգներ: Այո՛, այո՛, ընկերներ, հաջողությունների հետ, նվաճումների հետ կապված վտանգներ: Այդ վտանգները կայանում են նրանում, վոր քաղաքականության մեջ քիչ փորձված և շատ բան չտեսած մարդկանց մոտ հաջողությունների [illegible]ությու-

նը,— հաջողության-հաջողության հետևից, նվաճում-նվաճման հետևից, պլանների գերակատարումը-գերակատարման հետևից — առաջ է բերում անհոգության ու ինքնագոհության տրամադրություններ, ստեղծում է պարադային հանդեսների և փոխադարձ վողջույնների մթնոլորտ, վորոնք սպանում են չափի զգացումը և բթացնում են քաղաքական հոտառությունը, ապամոբիլիզացնում են մարդկանց և մղում դեպի այն, վոր նիրհեն դափնիների վրա:

Զարմանալի չէ, վոր գոռոզամտության և ինքնագոհության այդ արբեցնող մթնոլորտում, պարադային ցույցերի և աղմկալից ինքնագովության մթնոլորտում, մարդիկ մոռանում են մեր յերկրի ճակատագրի համար առաջնակարգ նշանակություն ունեցող մի քանի էական փաստերի մասին, մարդիկ սկսում են չնկատել այնպիսի անախորժ փաստեր, ինչպիսիք են կապիտալիստական շրջապատումը, վնասարարության նոր ձևերը, մեր հաջողությունների հետ կապված վտանգները և այլն: Կապիտալիստական շրջապատո՞ւմ: Բայց չէ՞ վոր դա դատարկ բան է: Ի՞նչ



նշանակություն կարող է ունենալ ինչ վոր կապիտալիստական շրջապատում, յեթե մենք կատարում ու գերակատարում ենք մեր տնտեսական պլանները: Վնասարարության նոր ձևե՞ր, պայքար տրոցկիզմի դե՞մ: Այդ բոլորը դատարկ բաներ են: Ի՞նչ նշանակություն կարող է ունենալ այդ բոլոր մանրուքը, յերբ մենք կատարում և գերակատարում ենք մեր տնտեսական պլանները: Կուսակցական կանոնադրությո՞ւն, կուսօրգանների ընտրականությո՞ւն, կուսակցական ղեկավարների հաշվետվությո՞ւն կուսակցական մասսայի առաջ: Հարկավո՞ր է արդյոք այդ բոլորը: Արժե՞ մի թե ընդհանրապես գլուխ ցավացնել այդ բոլոր մանրուքների համար, յեթե մեզանում տնտեսությունն աճում է, իսկ բանվորների և գյուղացիների նյութական դրությունն ավելի ու ավելի յե բարելավվում: Այդ բոլորը դատարկ բաներ են: Պլանները գերակատարում են, մեզ մոտ կուսակցությունը վատ չէ, կուսակցության Կենտկոմը նույնպես վատ չէ — էլ ի՞նչ է պետք մեզ: Տարօրինակ մարդիկ են նստած այնտեղ Մոսկվայում, կուսակցության Կենտ[illegible] — ինչ վոր [illegible] են

[illegible] րության մասին, իրենք չեն քնում, չեն թողնում, որ ուրիշներն էլ քնեն...

Ահա ձեզ ակնառու օրինակ, թե ինչպես հեշտությամբ և «պարզ կերպով» քաղաքական կուրությամբ են վարակվում մեր մի քանի անփորձ ընկերները՝ տնտեսական հաջողություններով գլխապտույտ կերպով տարվելու հետևանքով:

Սրանք են հաջողությունների հետ, նվաճումների հետ կապված վտանգները:

Սրանք են պատճառներն այն բանի, որ մեր կուսակցական ընկերները, տարվելով տնտեսական հաջողություններով, մոռացել են միջազգային ու ներքին բնույթի փաստերի մասին, որոնք էական նշանակություն ունեն Խորհրդային Միության համար, և չեն նկատել մի ամբողջ շարք վտանգներ, որոնք շրջապատել են մեր յերկիրը:

Սրանք են մեր անհոգության, մոռացկոտության, բարեհոգության, քաղաքական կուրության արմատները:

Սրանք են մեր տնտեսական ու կուսակցական աշխատանքի թերությունների արմատները:



V

## ՄԵՐ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Ի՞նչպես վերացնել մեր աշխատանքի այս թերությունները:

Ի՞նչ է հարկավոր անել դրա համար:

Անհրաժեշտ է իրականացնել հետևյալ միջոցառումները.

1) Անհրաժեշտ է նախ և առաջ այս կամ այն գերատեսչության դծով «ընթացիկ հարցերի» մեջ խրված մեր կուսակցական ընկերների ուշադրությունը շրջել միջազգային և ներքին բնույթի քաղաքական մեծ հարցերի կողմը:

2) Անհրաժեշտ է մեր կուսակցության քաղաքական աշխատանքը հասցնել հարկ յեղած բարձրության, անկյունաքար դարձնելով կուսակցական, խորհրդային և տնտեսական կադրերի քաղաքական լուսավորության ու բոլշևիկյան կոփման խնդիրը:

3) Անհրաժեշտ է պարզաբանել մեր կուսակցական ընկերներին, որ տնտեսական հաջողությունները, որոնց նշանակությունն անվիճելիորեն չափազանց մեծ է և որոնց մենք ձգտելու ու հասնելու յենք

նաև առաջիկայում՝ որ—որի վրա, տարեց-տարի,—այնուամենայնիվ չեն սպառում մեր սոցիալիստական շինարարության ամբողջ գործը:

Պարզաբանել, որ ստվերոտ կողմերը, որոնք կապված են տնտեսական հաջողությունների հետ և արտահայտվում են ինքնագոհությամբ, անհոգությամբ, քաղաքական հոտառության բթացմամբ՝ կարող են վերացվել միայն այն դեպքում, եթե տնտեսական հաջողությունները զուգակցվում են կուսակցական շինարարության և մեր կուսակցության քաղաքական ծավալուն աշխատանքի հաջողությունների հետ:

Պարզաբանել, որ տնտեսական հաջողությունններն իրենք, դրանց հաստատուն և տևական լինելը, լիովին ու ամբողջությամբ կախված են կուսակցական-կազմակերպական և կուսակցական-քաղաքական աշխատանքի հաջողություններից, որ առանց այդ պայմանի տնտեսական հաջողությունները կարող են լինել ավազի վրա կառուցված:

4) Անհրաժեշտ է հիշել և չմոռանալ, որ կապիտալիստական շրջապատումն այն հիմնական փաստն է հանդի-



սանում, որը որոշում է Խորհրդային Միության միջազգային դրությունը:

Հիշել և չմոռանալ, որ քանի կա կապիտալիստական շրջապատումը, կլինեն նաև վնասարարներ, դիվերսանտներ, լրտեսներ, տեռորիստներ, որոնց Խորհրդային Միության թիկունքներն են ուղարկում օտարերկրյա պետությունների հետախուզական օրգանները, հիշել այդ մասին և պայքար մղել այն ընկերների դեմ, որոնք թերագնահատում են կապիտալիստական շրջապատման փաստի նշանակությունը, որոնք թերագնահատում են վնասարարության ուժերն ու նշանակությունը:

Պարզաբանել մեր կուսակցական ընկերներին, որ ոչ մի տնտեսական հաջողություն, որքան էլ այդ մեծ լինի, չի կարող չեղյալ դարձնել կապիտալիստական շրջապատման փաստը և այդ փաստից բխող արդյունքները:

Ձեռք առնել անհրաժեշտ միջոցներ նրա համար, որպեսզի մեր ընկերները, կուսակցական ու ոչ կուսակցական բոլշևիկները, հնարավորություն ունենան ծանոթանալու օտարերկրյա հետախուզական օրգանների վնասարար-դիվերսիոն և լրտե-

 

սական աշխատանքի նպատակներին ու խնդիրներին, պրակտիկային ու տեխնիկային:

5) Անհրաժեշտ է պարզաբանել մեր կուսակցական ընկերներին, որ տրոցկիստները, որոնք ներկայացնում են օտարերկրյա հետախուզական օրգանների դիվերսիոն-վնասարար ու լրտեսական աշխատանքի ակտիվ տարրերը, վաղուց արդեն դադարել են բանվոր դասակարգի ներսում քաղաքական հոսանք լինելուց, որ նրանք վաղուց արդեն դադարել են ծառայելուց որևէ գաղափարի, որը համատեղելի լե բանվոր դասակարգի շահերի հետ, որ նրանք վերածվել են վնասարարների, դիվերսանտների, լրտեսների, մարդասպանների անսկզբունք ու անգաղափարական մի բանդայի, որոնք վարձկան աշխատողներ են օտարերկրյա հետախուզական օրգաններում:

Պարզաբանել, որ ժամանակակից տրոցկիզմի դեմ մղվող պայքարում այժմ հարկավոր են ոչ թե հին մեթոդներ, ոչ թե դիսկուսիայի մեթոդներ, այլ նոր մեթոդներ, արմատահանման և ջախջախման մեթոդներ:

6) Անհրաժեշտ է պարզաբանել մեր



կուսակցական ընկերներին ժամանակակից վնասարարների և Շախտիի ժամանակաշրջանի վնասարարների միջև եղած տարբերությունը, պարզաբանել, որ եթե Շախտիի ժամանակաշրջանի վնասարարները մեր մարդկանց խաբում էին տեխնիկայով, օգտագործելով նրանց տեխնիկական հետամնացությունը, ապա ժամանակակից վնասարարները, որոնք ունեն կուսակցական տոմս, մեր մարդկանց խաբում են իրենց նկատմամբ՝ որպես կուսակցության անդամների նկատմամբ՝ եղած քաղաքական վստահությամբ, օգտագործելով մեր մարդկանց քաղաքական անհոգությունը:

Անհրաժեշտ է տեխնիկային տիրապետելու հին լոզունգը, որը համապատասխանում էր Շախտիի ժամանակաշրջանին, լրացնել կադրերի քաղաքական դաստիարակության, բոլշևիզմին տիրապետելու և մեր քաղաքական դյուրահավատությունը լիկվիդացիայի ենթարկելու լոզունգով, մի լոզունգով, որը լիովին համապատասխան լինի այժմյան մեր ապրած ժամանակաշրջանին:

Կարող են հարց տալ, թե չէ՞ր կարելի

տալ յերկու լոզունգներն էլ,—թե՛ առաջին լոզունգը՝ տեխնիկային տիրապետելու մասին, թե՛ յերկրորդ լոզունգը՝ կադրերի քաղաքական դաստիարակության մասին: Վո՛չ, չեր կարելի: Մեզանում, բոլշևիկյան կուսակցության մեջ, գործերն այդպես չեն կատարվում: Հեղափոխական շարժման շրջադարձային մոմենտներում միշտ առաջ ե քաշվում մեկ վորևե հիմնական լոզունգ, վորպես հանգուցային, նրա համար, վորպեսզի նրանից կառչելով, նրա միջոցով ձիգ տալի ամբողջ շղթան: Լենինն այսպես ե սովորեցրել մեզ. գտեք հիմնական օղակը մեր աշխատանքի շղթայի մեջ, կառչեցեք դրանից և ձգեցեք այն նրա համար, վորպեսզի նրա միջոցով դուրս քաշենք ամբողջ շղթան և ընթանանք առաջ: Հեղափոխական շարժման պատմությունը ցույց ե տալիս, վոր այդ տակտիկան միակ ճիշտ տակտիկան ե հանդիսանում: Շախտի ժամանակաշրջանում մեր մարդկանց թուլությունն իրենց տեխնիկական հետամնացության մեջ եր: Վոչ թե քաղաքական, այլ տեխնիկական հարցերն եյին այն ժամանակ մեր թույլ տեղը կազմում: Ինչ վերաբերում ե այն ժամանակվա վնասարարնե-



րի նկատմամբ մեր ունեցած քաղաքական վերաբերմունքին, ապա այն միանգամայն պարզ եր, վորպես բոլշևիկների վերաբերմունք քաղաքականապես խորթ մարդկանց նկատմամբ: Մեր այդ տեխնիկական թուլությունը մենք վերացրինք նրանով, վոր տվինք տեխնիկային տիրապետելու լոզունգը, և անցած ժամանակաշրջանում դաստիարակեցինք տասնյակ ու հարյուր հազարավոր տեխնիկապես կոփված բոլշևիկյան կադրեր: Այլ բան ե այժմ, յերբ մենք արդեն ունենք տեխնիկապես կոփված բոլշևիկյան կադրեր, և յերբ վնասարարների դերում հանդես են գալիս վոչ թե բացահայտորեն խորթ մարդիկ, վորոնք, այդ էլ ասենք, վոչ մի տեխնիկական առավելություն չունեն մեր մարդկանց համեմատությամբ, այլ այնպիսի մարդիկ են, վորոնք կուսակցական տոմս ունեն և վայելում են կուսակցության անդամի բոլոր իրավունքները:

Այժմ մեր մարդկանց թուլությունը վոչ թե տեխնիկական հետամնացությունն ե, այլ քաղաքական անհոգությունը, կույր վստահությունը պատահականորեն կուսակցական տոմս ստացած մարդկանց նր-

պատասանը, տարբերվում ոչ թե ըստ նրանց քաղաքական ղեկավարությունների, այլ ըստ նրանց աշխատանքի արդյունքների մատուցելու բացակայությունը:

Այժմ մեզ համար հանգուցային հարց է հանդիսանում ոչ թե մեր կադրերի տեխնիկական հետամնացության վերացումը, քանի որ հիմնականում դա արդեն վերացված է, այլ քաղաքական անհոգության և պատահականորեն կուսակցական տոմս ստացած մնացորդների նկատմամբ յեղած քաղաքական դյուրահավատության վերացումը:

Այս է արմատական տարբերությունը կադրերի համար մղվող պայքարի գործում՝ Շախտիի ժամանակաշրջանի հանգուցային հարցի և ներկայիս ժամանակաշրջանի հանգուցային հարցի միջև:

Ահա թե ինչու մենք չէինք կարող տալ և չպետք է տայինք սրանից տասը տարի առաջ միանգամից յերկու լոզունգ՝ և տեխնիկային տիրապետելու լոզունգը, և կադրերի քաղաքական դաստիարակման լոզունգը:

Ահա թե ինչու տեխնիկային տիրապետելու հին լոզունգն անհրաժեշտ է այժմ լրացնել նոր լոզունգով՝ բոլշևիզմին տի-



րապետելու, կադրերի քաղաքական դաստիարակության և մեր քաղաքական անհոգությունը վերացնելու լոզունգով:

7) Անհրաժեշտ է ջախջախել և դեն դցել այն նեխած թեորիան, թե մեր յուրաքանչյուր առաջխաղացումով դասակարգային պայքարը մեզանում պետք է, իբրև թե, ավելի ու ավելի մարի, թե մեր հաջողությունների զուգընթաց, դասակարգային թշնամին, իբրև թե, ավելի ու ավելի ձեռնասուն է դառնում:

Դա ոչ միայն նեխած թեորիա յէ, այլև վտանգավոր թեորիա յէ, որովհետև քնեցնում է մեր մարդկանց, թակարդի մեջ է գցում նրանց, իսկ դասակարգային թշնամուն հնարավորություն է տալիս չակվելու՝ խորհրդային իշխանության դեմ մղած իր պայքարում:

Ընդհակառակը՝ որքան ավելի առաջ ընթանանք, որքան ավելի մեծ հաջողություններ ունենանք, այնքան ավելի կատաղելու յեն ջախջախված շահագործող դասակարգերի մնացորդները, այնքան ավելի շուտ պետք է դիմեն նրանք պայքարի ավելի սուր ձևերի, այնքան ավելի վատություն են անելու նրանք խորհրդային պետությանը, այնքան ավելի կառչելու

 

յեն պայքարի ամենակատաղի միջոցներին, վորպես դատապարտվածների վերջին միջոցների:

Պետք է նկատի ունենալ, վոր ջախջախված դասակարգերի մնացորդները ԽՍՀՄ-ում միայնակ չեն: Նրանք ուղղակի ոժանդակություն ունեն ԽՍՀՄ-ի սահմաններից դուրս գտնվող մեր թշնամիներից: Սխալ կլիներ կարծել, թե դասակարգային պայքարի վոլորտը սահմանափակված է ԽՍՀՄ-ի սահմաններով: Յեթե դասակարգային պայքարի մի ծայրը գործում է ԽՍՀՄ-ի շրջանակներում, ապա նրա մյուս ծայրը ձգվում, հասնում է մեզ շրջապատող բուրժուական պետությունների սահմանները: Այդ չեն կարող չգիտենալ ջախջախված դասակարգերի մնացորդները: Յեվ հենց այն պատճառով, վոր նրանք գիտեն այդ, նրանք այսուհետև էլ շարունակելու յեն իրենց կատաղի վոտնձգությունները:

Այդ է սովորեցնում մեզ պատմությունը: Այդ է սովորեցնում մեզ լենինիզմը:

Անհրաժեշտ է այդ բոլորը հիշել և արթուն կենալ:

8) Անհրաժեշտ է ջախջախել և դեն գցել մյուս նեխած թեորիան, վորն ասում



է, թե վնասարար իբր թե չի կարող լինել նա, ով միշտ չի վնասում և ով թեկուզ յերբեմն հաջողություններ է ցույց տալիս իր աշխատանքում:

Այդ տարորինակ թեորիան մերկացնում է նրա հեղինակների միամտությունը:

Վոչ մի վնասարար շարունակ չի վնասի, յեթե նա չի ուզում մերկացված լինել ամենակարճ ժամանակամիջոցում: Ընդհակառակը, իսկական վնասարարը պետք է ժամանակ առ ժամանակ հաջողություններ ցույց տա իր աշխատանքում, վորովհետև դա միակ միջոցն է իրեն վորպես վնասարար պահպանելու, վստահություն շահելու և իր վնասարարական աշխատանքը շարունակելու:

Յես կարծում եմ, վոր այս հարցը պարզ է և նոր բացատրությունների կարիք չունի:

9) Անհրաժեշտ է ջախջախել և դեն գցել յերրորդ նեխած թեորիան, վորն ասում է, թե տնտեսական պլանների սիստեմատիկ կատարումն իբրև թե ի չիք է դարձնում վնասարարությունը և վնասարարության հետևանքները:

Նմանօրինակ թեորիան կարող է հետապնդել միայն մի նպատակ՝ շոյել մեր

աշխատողների դերատեսչական ինքնասիրությունը, հանդստացնել նրանց և թուլացնել նրանց պայքարը վնասարարության դեմ:

Ի՞նչ է նշանակում «մեր տնտեսական պլանների սիստեմատիկ կատարումը»:

Առաջին՝ ապացուցված է, որ մեր բոլոր տնտեսական պլանները ցածրացված են, որովհետև նրանք հաշվի չեն առնում այն հսկայական ռեզերվներն ու հնարավորությունները, որ թաղնված են մեր ժողովրդական տնտեսության խորքերում:

Երկրորդ՝ տնտեսական պլանների միագումար կատարումն ըստ առանձին ժողկոմատների՝ ամբողջությամբ վերցրած, դեռ չի նշանակում, որ մի քանի շատ կարևոր ճյուղերում պլանները նույնպես կատարվում են: Ընդհակառակը, փաստերն ասում են, որ տարեկան տնտեսական պլանները կատարած և նույնիսկ գերակատարած մի ամբողջ շարք ժողկոմատներ սիստեմատիկորեն չեն կատարում պլանները ժողովրդական տնտեսության մի քանի շատ կարևոր ճյուղերում:

Երրորդ՝ կասկած չի կարող լինել, որ յեթե վնասարարները մերկացված և դուրս գցված չլինեյին, շատ ավելի վատ վի-



ճակի մեջ կլիներ տնտեսական պլանների կատարման գործը, որի մասին հարկ է, որ հիշեյին քննվող թեորիայի կարճատես հեղինակները:

Չորրորդ՝ վնասարարներն իրենց գլխավոր վնասարարական աշխատանքը սովորաբար հարմարեցնում են ոչ թե խաղաղ ժամանակվա շրջանին, այլ պատերազմի նախօրյակի կամ հենց պատերազմի ժամանակաշրջանին: Յենթադրենք, որ մենք սկսեյինք օրորել մեզ «տնտեսական պլանների սիստեմատիկ կատարման» նեխած թեորիայով և ձեռք չտայինք վնասարարներին:

Պատկերացնո՞ւմ են արդյոք այդ նեխած թեորիայի հեղինակները, թե ինչպիսի վիթխարի վնաս հասցրած կլինեյին վնասարարները մեր պետության պատերազմի դեպքում, յեթե նրանց թողնեյին մնալ մեր ժողովրդական տնտեսության ընդերքում՝ «տնտեսական պլանների սիստեմատիկ կատարման» նեխած թեորիայի հովանու տակ:

Մի՞թե պարզ չե, որ «տնտեսական պլանների սիստեմատիկ կատարման» թեորիան վնասարարների համար ձեռնտու թեորիա յե:

10) Անհրաժեշտ է ջախջախել և դեն

գցել չորրորդ նեխած թեորիան, վորն ասում է, թե ստախանովյան շարժումը վնասարարությունը վերացնելու իբրև թե հիմնական միջոցն է:

Այդ թեորիան հնարվել է նրա համար, վոր ստախանովականների և ստախանովյան շարժման վերաբերյալ շաղակրատության աղմուկի տակ հեռացվի հարվածը վնասարարներից:

Ընկեր Մոլոտովն իր զեկուցման մեջ ցուցադրեց մի շարք փաստեր, վորոնք խոսում են այն մասին, թե ինչպես տրոցկիստական և վոչ տրոցկիստական վնասարարները Կուզբասում ու Դոնբասում, շահագործելով քաղաքականապես անհոգ մեր ընկերների վստահությունը, սիստեմատիկորեն խաբում էին ստախանովականներին, քար էին գցում նրանց անիվի տակ, արհեստականորեն մի ամբողջ շարք խոչընդոտներ էին ստեղծում նրանց հաջող աշխատանքի դեմ և, վերջապես, հասան այն բանին, վոր քայքայեցին նրանց աշխատանքը: Ի՞նչ կարող են անել միմիայն ստախանովականները, յեթե կապիտալ շինարարության վնասարարական կատարումը, ասենք՝ Դոնբասում, խզում առաջացրեց ածխի հանույթի նախապատրաստա-



կան աշխատանքի միջև, վորը հետ է մնում տեմպից, և մյուս բոլոր աշխատանքների միջև: Մի՞թե պարզ չէ, վոր ստախանովյան շարժումն ինքը կարիք ունի մեր ռեալ ոգնությանը՝ ընդդեմ վնասարարների բոլոր ու ամեն տեսակ մեքենայությունների, վորպեսզի առաջ մղի գործը և կատարի իր մեծ միսիան: Մի՞թե պարզ չէ, վոր պայքար վնասարարության դեմ, պայքարը վնասարարության լիկվիդացիայի համար, վնասարարության սանձումն այն պայմանն է, վորն անհրաժեշտ է նրա համար, վորպեսզի ստախանովյան շարժումը կարողանա ծավալվել ամբողջ լայնությամբ:

Յես կարծում եմ, վոր այդ հարցը նույնպես պարզ է և նոր բացատրությունների կարիք չունի:

11) Անհրաժեշտ է ջախջախել և դեն գցել հինգերորդ նեխած թեորիան, վորն ասում է, թե տրոցկիստական վնասարարները իբր թե այլևս ռեզերվ չունեն, թե նրանք իբր թե իրենց վերջին կադրերն են հավաքում:

Այդ ճիշտ չէ, ընկերներ: Այդպիսի թեորիա կարող էին հնարել միմիայն միամիտ մարդիկ: Տրոցկիստական վնասարար-

ներն ունեն իրենց ռեզերվները: Նրանք բաղկացած են նախ և առաջ ԽՍՀՄ-ի ջախջախված չահագործող դասակարգերի մնացորդներից, նրանք բաղկացած են ԽՍՀՄ-ի սահմաններից դուրս գտնվող մի շարք խմբերից ու կազմակերպություններից, վորոնք թշնամի յեն Խորհրդային Միությանը:

Վերցնենք, որինակ, տրոցկիստական հակահեղափոխական չորրորդ ինտերնացիոնալը, վորը յերկու յերրորդով բաղկացած է լրտեսներից ու դիվերսանտներից: Ինչո՞վ ռեզերվ չէ այդ: Մի՞թե պարզ չէ, վոր այդ լրտեսական ինտերնացիոնալը կադրեր է տալու տրոցկիստների լրտեսական-վնասարարական աշխատանքի համար:

Կամ վերցնենք, որինակ, ստահակ Շեֆլոյի խմբակը՝ Նորվեգիայում, խմբակ, վորն իր մոտ պատսպարել եր օբեր-լրտես Տրոցկուն և ոգնում է նրան վնաս հասցնելու Խորհրդային Միությանը: Ինչո՞վ ռեզերվ չէ այդ խմբակը: Ո՞վ կարող է ժխտել, վոր այդ հակահեղափոխական խմբակն այսուհետև ևս ծառայություն կմատուցի տրոցկիստական լրտեսներին ու վնասարարներին:

Կամ վերցնենք որինակ, նույնպիսի մի



ստահակի խմբակ, ինչպիսին է Շեֆլոն, Սուվարինի խմբակը Ֆրանսիայում: Ինչո՞վ ռեզերվ չէ նա: Մի՞թե կարելի յե ժխտել, վոր ստահակների այդ խմբակը նույնպես ոգնելու յե տրոցկիստներին՝ Խորհրդային Միության դեմ ուղղված նրանց լրտեսական-վնասարար աշխատանքում:

Իսկ Գերմանիայում գտնվող այդ բոլոր պարոնները, ամեն տեսակ Ռութ Ֆիշերները, Մասլովները, Ուրբանսները, վորոնք իրենց հոգին ու մարմինը վաճառել են ֆաշիստներին, ինչո՞վ ռեզերվ չեն նրանք տրոցկիստական, լրտեսական-վնասարար աշխատանքի համար:

Կամ, որինակ, գրողների հայտնի հորդան Ամերիկայում՝ հայտնի ժուլիկ Իստմենի գլխավորությամբ, գրչի այդ բոլոր ավազակները, վորոնք ապրում են հենց նրանով, վոր զրպարտում են ԽՍՀՄ-ի բանվոր դասակարգին,— ինչո՞վ ռեզերվ չեն նրանք տրոցկիստների համար:

Վո՛չ, պետք է դեն գցել այն նեխած թեորիան, թե տրոցկիստներն իբր թե իրենց վերջին կադրերն են հավաքում:

12) Վերջապես, անհրաժեշտ է ջախջախել և դեն գցել մի նեխած թեորիա ևս,

վորն ասում է, թե, վորովհետև մենք, բոլշևիկներս, շատ ենք, իսկ վնասարարները քիչ են, վորովհետև մեզ, բոլշևիկներիս, պաշտպանում են տասնյակ միլիոնավոր մարդիկ, իսկ տրոցկիստ վնասարարներին՝ միմիայն միավորներն ու տասնյակները, ապա մենք, բոլշևիկներս, կարող ենք ուշադրություն չդարձնել ինչ վոր մի բուռ վնասարարների վրա:

Այդ ճիշտ չէ, ընկերներ: Այդ ավելի քան տարորինակ թեորիան հնարված է մխիթարելու համար մեր մի քանի ղեկավար ընկերներին, վորոնք տապալվել են աշխատանքում վնասարարության դեմ պայքարել չկարողանալու պատճառով, և հնարված է քնեցնելու համար նրանց զգաստությունը, թողնելու, վոր նրանք հանգիստ քնեն:

Վոր տրոցկիստական վնասարարներին աջակցում են միավորներ, իսկ բոլշևիկներին պաշտպանում են տասնյակ միլիոնավոր մարդիկ — դա, իհարկե, ճիշտ է: Բայց դրանից բնավ չի հետևում, թե վնասարարները չեն կարող լրջագույն վնաս հասցնել մեր գործին: Վատություն անելու և վնասելու համար բնավ մեծ թվով մարդ չի պահանջվում: Դնեպրոստրոյը կառուցելու համար հարկավոր է գործի դնել տասնյակ հազարավոր բանվոր: Իսկ այն պայթեցնելու համար պահանջվում է գուցե մի քանի տասնյակ մարդ, վոչ ավելի: Վորպեսզի պատերազմի ժամանակ ճակատամարտը շահվի, դրա համար կարող է պահանջվել Կարմիր բանակայինների մի քանի կորպուս: Իսկ վորպեսզի այդ շահումը ճակատում ձախողվի, դրա համար բավական է, վոր վորևե տեղում՝ բանակի շտաբում կամ նույնիսկ դիվիզիայի շտաբում լինեն մի քանի լրտես, վորոնք կարող են գողանալ ռազմական պլանը և հանձնել հակառակորդին: Վորպեսզի յերկաթուղային մեծ կամուրջ կառուցվի՝ դրա համար հազարավոր մարդիկ են պահանջվում: Բայց, վորպեսզի այն պայթեցվի՝ դրա համար բավական է ընդամենը մի քանի հոգի: Կարելի յեր տասնյակ ու հարյուրավոր այսպիսի օրինակներ բերել:

Հետևաբար, չի կարելի իրեն մխիթարել նրանով, թե մենք շատ ենք, իսկ նրանք՝ տրոցկիստական վնասարարները քիչ են:

Պետք է հասնել այն բանին, վոր նրանք՝ տրոցկիստական վնասարարներ բոլորովին չլինեն մեր շարքերում:

Այդպես է գործն այն հարցում, թե ինչպես պետք է լիկվիդացիայի յենթարկել մեր աշխատանքի այն թերությունները, վորոնք ընդհանուր են մեր բոլոր՝ թե՛ տնտեսական ու խորհրդային և թե՛ վարչական ու կուսակցական կազմակերպությունների համար:

Սրանք են այն միջոցները, վորոնք անհրաժեշտ են այդ թերությունները վերացնելու համար:

Ինչ վերաբերում է հատկապես կուսակցական կազմակերպություններին և նրանց աշխատանքի թերություններին, ապա այդ թերությունների վերացման միջոցների մասին բավականաչափ մանրամասնորեն խոսվում է ձեր հայեցողությանը ներկայացվող բանաձևի նախագծում: Ուստի յես կարծում եմ, վոր այստեղ կարիք չկա ծանրանալու գործի այդ կողմի վրա:

Յես կուզեյի միայն մի քանի խոսք ասել մեր կուսակցական կադրերի քաղաքական պատրաստության ու կատարելագործման հարցի մասին:

Յես կարծում եմ, վոր յեթե մենք կարողանայինք, յեթե մենք ի վիճակի լինեյինք մեր կուսակցական կադրերը վարից-վեր նախապատրաստելու իդեոլոգիապես



և կոփելու քաղաքականորեն այնպես, վոր նրանք կարողանային ազատորեն կողմնորոշվել ներքին ու միջազգային իրադրության մեջ, յեթե մենք կարողանայինք դարձնել նրանց միանգամայն հասուն լենինյաններ, մարքսիստներ՝ ընդունակ առանց լուրջ սխալների լուծելու յերկիրը ղեկավարելու հարցերը, ապա դրանով մենք ինը տասներորդով լուծած կլինեյինք մեր բոլոր խնդիրները:

Ի՞նչ վիճակի մեջ է մեր կուսակցության ղեկավար կազմի հարցը:

Մեր կուսակցության կազմում, յեթե նկատի առնենք նրա ղեկավար խավերը, կան մոտ յերեք—չորս հազար բարձր ղեկավարներ: Դա—յես կասեյի— մեր կուսակցության գեներալիտետն է:

Ապա գալիս են 30—40 հազար միջակ ղեկավարներ: Դա մեր կուսակցական սպայությունն է:

Այնուհետև գալիս է մոտ 100—150 հազար կուսակցական ստորին հրամանատարական կազմ: Դա մեր, այսպես ասած, կուսակցական յենթասպայությունն է:

Բարձրացնել այդ հրամանատարական կադրերի իդեոլոգիական մակարդակը և քաղաքական կոփվածությունը, լցնել այդ

կադրերի մեջ թարմ ուժեր, որոնք սպասում են իրենց առաջքաշմանը և այդպիսով ընդարձակել ղեկավար կադրերի կազմը — ահա խնդիրը:

Ի՞նչ է պահանջվում դրա համար:

Նախ և առաջ անհրաժեշտ է առաջարկել մեր կուսակցական ղեկավարներին — բջիջների քարտուղարներից մինչև մարզային ու հանրապետական կուսակցական կազմակերպությունների քարտուղարները — իրենց համար ընտրել որոշ ժամանակամիջոցում յերկուական մարդ, յերկուական այնպիսի կուսակցական աշխատող, որոնք ընդունակ են նրանց իսկական տեղակալները լինելու: Կարող են ասել՝ իսկ ո՞րտեղից գտնենք դրանց, յուրաքանչյուրի համար յերկու տեղակալ, մենք չունենք այդպիսի մարդիկ, չունենք համապատասխան աշխատողներ: Այդ ճիշտ չէ, ընկերներ: Ընդունակ մարդիկ, տաղանդավոր մարդիկ մենք ունենք տասնյակ հազարներով:

Հարկավոր է միայն ճանաչել նրանց և ժամանակին առաջքաշել, որպեսզի նրանք չլճանան հին տեղում և չսկսեն նեխել: Փորոնեցեք և կգտնեք:

Այնուհետև: Բջիջների քարտուղարների



կուսակցական ուսուցման ու վերապատրաստման համար անհրաժեշտ է յուրաքանչյուր մարզային կենտրոնում ստեղծել քառամսյա «Կուսակցական դասընթացներ»: Այդ դասընթացները պետք է ուղարկել բոլոր սկզբնական կուսակցական կազմակերպությունների (բջիջների) քարտուղարներին, իսկ այնուհետև, յերբ նրանք կանցնեն դասընթացը և կվերադառնան տեղերը, ուղարկել նրանց տեղակալներին և սկզբնական կուսկազմակերպության ամենաընդունակ անդամներին:

Այնուհետև: Շրջանային կազմակերպությունների առաջին քարտուղարների քաղաքական վերապատրաստման համար անհրաժեշտ է ԽՍՀՄ-ում, ամենք տասն առավել կարևոր կենտրոններում ստեղծել ութամսյա «Լենինյան դասընթացներ»: Այդ դասընթացները պետք է ուղարկել շրջանային և օկրուգային կուսակցական կազմակերպությունների առաջին քարտուղարներին, իսկ այնուհետև, յերբ նրանք կանցնեն դասընթացը և կվերադառնան տեղերը, — ուղարկել նրանց տեղակալներին և շրջանային ու օկրուգային կազմակերպության ամենաընդունակ անդամներին:

Այնուհետև: Քաղաքային կազմակերպու-

թյունների քարտուղարների իդեոլոգիական վերապատրաստման ու քաղաքական կատարելագործման համար անհրաժեշտ է ՀամԿ(բ)Կ Կենտկոմին կից կազմակերպել վեցամսյա «Կուսակցության պատմության ու քաղաքականության դասընթացներ»: Այդ դասընթացները պետք է ուղարկել քաղաքային կազմակերպությունների առաջին կամ երկրորդ քարտուղարներին, իսկ այնուհետև, երբ նրանք կանցնեն դասընթացները և կվերադառնան տեղերը, ուղարկել քաղաքային կազմակերպությունների ամենաընդունակ անդամներին:

Վերջապես, անհրաժեշտ է ՀամԿ(բ)Կ Կենտկոմին կից ստեղծել վեցամսյա «Խորհրդակցություն՝ նվիրված ներքին ու միջազգային քաղաքականության հարցերին»: Այստեղ պետք է ուղարկել մարզային ու երկրային կազմակերպությունների և ազգային կոմունիստական կուսակցությունների կենտրոնական կոմիտեների առաջին քարտուղարներին: Այդ ընկերները պետք է տան ոչ թե մեկ, այլ մի քանի հերթափոխ, վորոնք կարողանան փոխարինել մեր կուսակցության Կենտրոնական Կոմիտեի ղեկավարներին: Այդ անհրաժեշտ է, և այդ պետք է կատարվի:



Յես վերջացնում եմ, ընկերնե՛ր:

Մենք այսպիսով շարադրեցինք մեր աշխատանքի հիմնական թերությունները, ինչպես այն թերությունները, վորոնք ընդհանուր են մեր բոլոր կազմակերպությունների համար,—տնտեսական, վարչական, կուսակցական,— այնպես և այն թերությունները, վորոնք հատուկ են հատկապես միայն կուսակցական կազմակերպություններին,—թերություններ, վորոնք բանվոր դասակարգի թշնամիներն օգտագործում են իրենց դիվերսիոն-վնասարարական և լրտեսական-տեռորիստական աշխատանքի համար:

Մենք, այնուհետև, նշեցինք այն հիմնական միջոցառումները, վորոնք անհրաժեշտ են նրա համար, վորպեսզի վերացնենք այդ թերությունները և անվնաս դարձնենք տարբերկրյա հետախուզական օրգանների, տրոցկիստական-ֆաշիստական գործակալների դիվերսիոն-վնասարարական և լրտեսական-տեռորիստական վոտնձգությունները:

Հարց է ծագում, թե մենք կարո՞ղ ենք արդյոք իրագործել այս բոլոր միջոցառումները, ունե՞նք մենք արդյոք դրա

*թյունների քարտուղարների իդեոլոգիական վերապատրաստման ու քաղաքական կատարելագործման համար անհրաժեշտ է ՀամԿ(բ)Կ Կենտկոմին կից կազմակերպել վեցամսյա* «Կուսակցության պատմության ու քաղաքականության դասընթացներ»: *Այդ դասընթացները պետք է ուղարկել քաղաքային կազմակերպությունների առաջին կամ յերկրորդ քարտուղարներին, իսկ այնուհետև, յերբ նրանք կանցնեն դասընթացները և կվերադառնան տեղերը, ուղարկել քաղաքային կազմակերպությունների ամենաընդունակ անդամներին:*

*Վերջապես, անհրաժեշտ է ՀամԿ(բ)Կ Կենտկոմին կից ստեղծել վեցամսյա* «Խորհրդակցություն՝ նվիրված ներքին ու միջազգային քաղաքականության հարցերին»: *Այստեղ պետք է ուղարկել մարզային ու յերկրային կազմակերպությունների և ազգային կոմունիստական կուսակցությունների կենտրոնական կոմիտեների առաջին քարտուղարներին: Այդ ընկերները պետք է տան վոչ թե մեկ, այլ մի քանի հերթափոխ, վորոնք կարողանան փոխարինել մեր կուսակցության Կենտրոնական Կոմիտեյի ղեկավարներին: Այդ անհրաժեշտ է, և այդ պետք է կատարվի:*



*Ես վերջացնում եմ, ընկերնե՛ր:*

*Մենք այսպիսով շարադրեցինք մեր աշխատանքի հիմնական թերությունները, ինչպես այն թերությունները, վորոնք ընդհանուր են մեր բոլոր կազմակերպությունների համար,—տնտեսական, վարչական, կուսակցական,— այնպես և այն թերությունները, վորոնք հատուկ են հատկապես միայն կուսակցական կազմակերպություններին,—թերություններ, վորոնք բանվոր դասակարգի թշնամիներն ոգտագործում են իրենց դիվերսիոն-վնասարարական և լրտեսական-տեռորիստական աշխատանքի համար:*

*Մենք, այնուհետև, նշեցինք այն հիմնական միջոցառումները, վորոնք անհրաժեշտ են նրա համար, վորպեսզի* վերացնենք այդ թերությունները և անվնաս դարձնենք *ոտարերկրյա հետախուզական որգանների, տրոցկիստական-ֆաշիստական գործակալների դիվերսիոն-վնասարարական և լրտեսական-տեռորիստական վոտնձգությունները:*

*Հարց է ծագում, թե մենք կարո՞ղ ենք արդյոք իրագործել այս բոլոր միջոցառումները, ունե՞նք մենք արդյոք դրա*

համար բոլոր անհրաժեշտ հնարավորությունները։

Անկասկած, կարող ենք։ Կարող ենք, վորովհետև մենք մեր տրամադրության տակ ունենք այն բոլոր միջոցները, վորոնք անհրաժեշտ են այդ ձեռնարկումներն իրագործելու համար։

Իսկ ի՞նչ է պակասում մեզ։

Պակասում է միայն մեկ բան—պատրաստակամություն լիկվիդացիայի յենթարկելու մեր սեփական անհոգությունը, մեր սեփական բարեհոգությունը, մեր սեփական քաղաքական կարճատեսությունը։

Այս է խնդիրը։

Բայց մի՞թե մենք չենք կարողանա ազատվել այդ ծիծաղելի ու իդիոտային հիվանդությունից, մենք վոր տապալել ենք կապիտալիզմը, հիմնականում կառուցել ենք սոցիալիզմը և բարձրացրել ենք համաշխարհային կոմունիզմի մեծ դրոշը։

Մենք հիմք չունենք կասկածելու, վոր անտարակույս կազատվենք դրանից, յեթե, իհարկե, ցանկանանք այդ։ Կազատվենք վոչ թե պարզապես, այլ բոլշևիկորեն, ինչպես հարկն է։

Յեվ յերբ մենք կազատվենք այդ իդիոտային հիվանդությունից, մենք կարող



ենք լիակատար վստահությամբ ասել, վոր մեզ համար սարսափելի չէ վոչ մի թշնամի, վո՛չ ներքին, վո՛չ արտաքին, մեզ համար սարսափելի չեն նրանց վոտնձգությունները, վորովհետև մենք ապագայում նրանց կջախջախենք նույնպես, ինչպես ջախջախում ենք նրանց այժմ, ինչպես նրանց ջախջախել ենք անցյալում (ծափահարություններ)։

# ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻ ՅԵԶՐԱՓԱԿՄԱՆ ԽՈՍՔԸ

**ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Պլենումում, 1937 թվականի մարտի 5-ին**

ԸՆԿԵՐՆԵ՛Ր,

Յես իմ զեկուցման մեջ խոսեցի քննարկվող գործի հիմնական հարցերի մասին: Մտքերի փոխանակությունը ցույց տվեց, վոր մեզ մոտ այժմ կա լիակատար պարզություն, կա խնդիրների ըմբռնում և կա մեր աշխատանքի թերությունները վերացնելու պատրաստակամություն: Բայց մտքերի փոխանակությունը ցույց տվեց նաև, վոր կան մեր կազմակերպական-քաղաքական պրակտիկայի վորոշ կոնկրետ հարցեր, վորոնց վերաբերյալ մեզ մոտ դեռ չկա կատարելապես պարզ հասկացողություն: Յես հաշվեցի այդպիսի 7 հարց:



Թույլ տվեք մի քանի խոսք ասել այդ հարցերի մասին:

1. Այժմ, պետք է յենթադրել, վոր բոլորը հասկացան, գիտակցեցին, վոր տնտեսական կամպանիաներով ու տնտեսական հաջողություններով չափից դուրս տարվելը՝ կուսակցական-քաղաքական հարցերը թերագնահատելու և մոռացության տալու պայմաններում տանում է դեպի փակուղի: Նշանակում է, անհրաժեշտ է աշխատողների ուշադրությունը շրջել կուսակցական-քաղաքական հարցերի կողմը, այնպես, վոր տնտեսական հաջողությունները զուգակցվեն և կողք-կողքի ընթանան կուսակցական-քաղաքական աշխատանքի հաջողությունների հետ:

Գործնականորեն ինչպե՞ս իրականացնել կուսակցական-քաղաքական աշխատանքն ուժեղացնելու խնդիրը, կուսակցական կազմակերպությունների տնտեսական մանրունքներից ազատելու խնդիրը: Ինչպես յերևում է մտքերի փոխանակությունից, վորոշ ընկերներ հակում ունեն սխալ հետևություն անելու դրանից, վոր այժմ իբր թե անհրաժեշտ կլինի բոլորովին հեռանալ տնտեսական աշխատանքից: Համենայն դեպս

այներ յեղան—դե, այժմ, փառք աստծո, ազատվենք տնտեսական գործերից, այժմ արելի յե կուսակցական—քաղաքական աշ-ատանքով եվ զբաղվել: Ծի՞շտ է արդյոք յդ հետեվությունը: Ո՛չ, ճիշտ չե՛: Ցերբ եր կուսակցական ընկերները տարվելով նտեսական հաջողություններով, հեռանում յին քաղաքականությունից, այդ ծայրահե-ություն եր, վորը մեծ զոհեր պատճառեց եց: Ցեթե այժմ մեր վորոշ ընկերներ ձեռ-ամուխ լինելով կուսակցական—քաղաքական աշխատանքի ուժեղացմանը, կմտածեն հե-ռանալ տնտեսությունից, ապա այդ կլինի յուս ծայրահեղությունը, վորը մեզանից կպի վոչ պակաս թվով զոհեր: Չի կարելի նել ծայրահեղությունից նետվել դեպի յուսը: Չի կարելի քաղաքականությունն անջատել տնտեսությունից: Մենք չենք կա-րող հեռանալ տնտեսությունից նույնպես, ինչպես չենք կարող հեռանալ քաղաքակա-նությունից: Ուսումնասիրման հարմարու-թյան համար մարդիկ սովորաբար մեթոդո-լոգիորեն անջատում են տնտեսության հար-ցերը քաղաքականության հարցերից: Բայց այդ կատարվում է միայն մեթոդոլոգիորեն, արհեստականորեն, միայն ուսումնասիրման



հարմարության համար: Կյանքում, ընդ-հակառակը, պրակտիկայում քաղաքակա-նությունը և տնտեսությունն անանջատելի են: Նրանք գոյություն ունեն միասին և գործում են միասին: Ցեվ նա, ով մտածում է մեր պրակտիկ քաղաքականության մեջ տնտեսությունն անջատել քաղաքականու-թյունից, տնտեսական աշխատանքն ուժե-ղացնել քաղաքական աշխատանքը նվազեց-նելու գնով, կամ ընդհակառակը, քաղա-քական աշխատանքն ուժեղացնելու տնտե-սական աշխատանքի նվազեցման գնով,— ա անպայման ընկնում է փակուղու մեջ:

Բանաձևի նախագծի՝ կուսակցական կազմակերպությունները տնտեսական ման-րունքներից ազատելու և կուսակցական-քաղաքական աշխատանքն ուժեղացնելու վերաբերյալ հայտնի կետի իմաստն այն է, վոր հեռանանք տնտեսական աշխա-տանքից ու տնտեսական ղեկավարությու-նից, այլ սոսկ միայն այն, վոր այլևս թույլ չտանք տնտեսական օրգանները, այդ թվում և հատկապես հողա-յին օրգանները դիմազրկելու և մեր կու-սակցական կազմակերպություններով փո-խարինելու պրակտիկային: Հետևաբար ան-

հրաժեշտ է յուրացնել տնտեսական օրգան-ների բոլշևիկյան ղեկավարման մեթոդը, որը կայանում է նրանում, որ սիստեմա-տիկաբար օգնենք այդ օրգաններին, սիստե-մատիկաբար ամրացնենք նրանց և տնտեսու-թյունը ղեկավարենք ոչ թե այդ օրգաննե-րից անկախ, այլ նրանց միջոցով: Հարկա-վոր է տնտեսական օրգաններին ու նախ և առաջ հողային օրգաններին տալ լավագույն մարդիկ, հարկավոր է այդ օրգանները կոմ-պլեկտավորել նոր, լավագույն աշխատող-ներով, որոնք ընդունակ լինեն կատարել իրենց վրա դրված խնդիրները: Միայն այն բանից հետո, յերբ կկատարվի այդ աշխա-տանքը, կարելի յե հույս ունենալ, որ կու-սակցական կազմակերպությունները լիովին կազատագրվեն տնտեսական մանրուքներից: Հասկանալի յե, որ այդ գործը լուրջ է և պահանջում է որոշ ժամանակ: Բայց քա-նի դեռ այդ չի կատարված, կուսակցական կազմակերպությունները հարկադրված կլի-նեն առաջիկայում ևս որոշ կարճ ժամա-նակամիջոցում ընդհուպ զբաղվել գյուղա-տնտեսական գործերով՝ դրանց բոլոր ման-րամասնություններով—վար, ցանք, բեր-քահավաք և այլն:



2. Յերկու խոսք վնասարարների, դի-վերսանտների, լրտեսների և այլոց մասին: Հիմա, յես կարծում եմ, բոլորի համար պարզ է, որ այժմյան վնասարարներն ու դիվերսանտները, ինչպիսի դրոշակով էլ թե-կուզ դիմակավորվեն նրանք, տրոցկիստա-կան թե բուխարինյան, վաղուց արդեն դա-դարել են բանվորական շարժման մեջ քա-ղաքական հոսանք լինելուց, որ նրանք վեր են ածվել պրոֆեսիոնալ վնասարարների, դիվերսանտների, լրտեսների, մարդասպան-ների անսկզբունք ու գաղափարազուրկ մի բանդայի: Հասկանալի յե, որ անհրաժեշտ կլինի անողոքաբար ջախջախել ու արմա-տախիլ անել այդ պարոններին որպես բան-վոր դասակարգի թշնամիների, որպես մեր հայրենիքի դավաճանների: Այդ պարզ է և հետագա պարզաբանումներ չի պահան-ջում:

Բայց ահա մի հարց. գործնականորեն ի՞նչպես իրագործել տրոցկիզմի ճապոն-գերմանական գործակալներին ջախջախելու և արմատախիլ անելու խնդիրը: Այդ նշանա-կո՞ւմ է արդյոք, որ պետք է ջախջախել և արմատախիլ անել ոչ միայն իսկական տրոցկիստներին, այլև նրանց, ովքեր մի

ամանակ տատանվել են տրոցկիզմի կողմը, ակ այնուհետև վաղուց արդեն հեռացել են րոցկիզմից, ոչ միայն նրանց, ովքեր սկապես վնասարարության տրոցկիստա-ան գործակալներ են հանդիսանում, այլև րանց, ովքեր մի ժամանակ առիթ են ունե-ել անցնելու այն փողոցով, որով մի ժա-մանակ անցել է այս կամ այն տրոցկիստը: Համենայն դեպս այդպիսի ձայներ այստեղ, ժողովում լսվեցին: Կարելի՞ է արդյոք անաձևի նման մեկնաբանումը համարել ճիշտ: Ո՛չ, չի՛ կարելի ճիշտ համարել: Այդ հարցում, ինչպես և մյուս բոլոր հարցե-րում, անհրաժեշտ է անհատական, չերտա-վորված մոտեցում: Չի՛ կարելի բոլորին խուզել մեկ մկրատով: Այդպիսի հախուռն մոտեցումը կարող է միայն վնասել իսկա-կան տրոցկիստական վնասարարների ու լրտեսների դեմ պայքարելու գործին:

Մեր պատասխանատու ընկերների մեջ կան որոշ թվով նախկին տրոցկիստներ, որոնք վաղուց արդեն հեռացել են տրոց-կիզմից և տրոցկիզմի դեմ պայքար են մղում ոչ ավելի վատ, այլ ավելի լավ, քան մեր հարգելի ընկերներից ոմանք, որոնք դեպք



չեն ունեցել տրոցկիզմի կողմը տատանվե-լու: Հիմարություն կլիներ այժմ արատա-վորել այդպիսի ընկերներին: Մեր ընկեր-ների մեջ կան նաև այնպիսիները, որոնք գաղափարապես միշտ կանգնած են յեղել տրոցկիզմի դեմ, բայց չնայած դրան, անձ-նական կապ են պահպանել յեղել առան-ձին տրոցկիստների հետ, որը նրանք չեն հապաղել վերացնել հենց որ նրանց հա-մար պարզ է դարձել տրոցկիզմի գործնական ֆիզիոնոմիան: Լավ չէ, իհարկե, որ նրանք առանձին տրոց-կիստների հետ ունեցած իրենց անձ-նական բարեկամական կապը կտրեցին ոչ թե միանգամից, այլ ուշացու-մով: Բայց հիմարություն կլիներ այդպիսի ընկերներին տրոցկիստների հետ միասին մեկ կույտի մեջ գլորել:

3. Ի՞նչ է նշանակում ճիշտ ընտրել աշ-խատողներին և նրանց ճիշտ դասավորել աշխատանքի մեջ:

Այդ նշանակում է աշխատողներին ընտ-րել նախ՝ քաղաքական հատկանիշով, այ-սինքն նրանք արժանի՞ յեն արդյոք քաղա-քական վստահության, և յերկրորդ՝ գործ-նական հատկանիշով, այսինքն նրանք

պլատնի՞ չեն արդյոք այսինչ կոնկրետ աշխատանքի համար:

Այդ նշանակում է՝ գործնական մոտեցումը չվերածել գործամոլական մոտեցման, երբ մարդիկ հետաքրքրվում են աշխատողների գործարար հատկություններով, բայց չեն հետաքրքրվում նրանց քաղաքական փիլիսոփայով:

Այդ նշանակում է՝ քաղաքական մոտեցումը չվերածել միակ ու սպառիչ մոտեցման, երբ մարդիկ հետաքրքրվում են աշխատողների քաղաքական փիլիսոփայով, բայց չեն հետաքրքրվում նրանց գործնական հատկություններով:

Կարելի՞ է արդյոք ասել, որ բոլշևիկյան այս կանոնը կատարվում է մեր կուսակցական ընկերների կողմից: Դժբախտաբար, այդ չի կարելի ասել: Այստեղ, պլենումում արդեն խոսեցին այդ մասին: Բայց չասացին բոլորը: Բանն այն է, որ այդ փորձված կանոնը մեր պրակտիկայում շարունակ խախտվում է և այն էլ ամենակոպիտ ձևով: Ամենից ավելի հաճախ աշխատողներին ընտրում են ոչ թե ըստ օբյեկտիվ հատկանիշների, այլ ըստ պատահական, սուբյեկտիվ, օբիվատելական-քաղքե-



նիական հատկանիշների: Ամենից ավելի հաճախ ընտրում են այսպես կոչված ծանոթներին, բարեկամներին, հայրենակիցներին. անձնապես նվիրված մարդկանց, իրենց՝ շեֆերին գովաբանելու մեջ վարպետներին, անկախ նրանց քաղաքական ու գործնական պիտանիությունից:

Հասկանալի է, որ պատասխանատու աշխատողների ղեկավար խմբի փոխարեն ստացվում է մտերիմ մարդկանց մի ընտանիք, մի արտել, որի անդամներն աշխատում են ապրել խաղաղ, չվիրավորել միմյանց, աղբը դուրս չհանել բակից, գովաբանել միմյանց և ժամանակ առ ժամանակ փուչ ու դատարկ և սիրտ խառնող ռապորտներ ուղարկել կենտրոն հաջողությունների մասին:

Դժվար չէ հասկանալ, որ այդպիսի ընտանեկան իրադրության մեջ չի կարող տեղ լինել ոչ աշխատանքի թերությունների քննադատության համար, ո՛չ աշխատանքի ղեկավարների ինքնաքննադատության համար:

Հասկանալի է, որ այդպիսի ընտանեկան իրադրությունը բարենպաստ միջավայր է ստեղծում ստորաքարշներ աճեցնե-

լու համար, մարդիկ, վորոնք զուրկ են ի-
րենց արժանապատվության զգացմունքից
և այդ պատճառով վոչ մի ընդհանուր բան
չունեն բոլշևիզմի հետ:

Վերցնենք, օրինակ, ընկերներ Միրզոյա-
նին և Վայնովին: Դրանցից առաջինը Ղա-
զախստանի յերկրային կուսակցական կազ-
մակերպության քարտուղարն է, յերկրոր-
դը՝ Յարոսլավլի մարզային կուսակցական
կազմակերպության քարտուղարը: Այդ մար-
դիկ մեր շրջանում հետին աշխատողներ
չեն: Իսկ ինչպե՞ս են նրանք ընտրում աշ-
խատողներին: Առաջինը Ադրբեջանից և Ու-
րալից, վորտեղ նա աշխատելիս է յեղել ա-
ռաջ, իր հետ Ղազախստան է քաշ տվել
30—40 հոգի «իր» մարդկանց և պատաս-
խանատու պոստերի յե դասավորել նրանց
Ղազախստանում: Յերկրորդը՝ Դոնբասից,
վորտեղ նա առաջ աշխատում եր, իր հետ
Յարոսլավլ է քաշ տվել տասնյակից ավելի
նույնպես «իր» մարդկանց և նրանց դասա-
վորել է նույնպես պատասխանատու պոս-
տերում: Նշանակում է, ընկեր Միրզոյանն
ունի իր արտելը, իր արտելն ունի նաև ըն-
կեր Վայնովը: Միթե՞ չեր կարելի աշխա-
տողներ ընտրել տեղական մարդկանցից,



ղեկավարվելով մարդկանց ընտրության և
դասավորման բոլշևիկյան հայտնի կանո-
նով: Իհարկե կարելի յեր: Իսկ ինչո՞ւ նը-
րանք չարին այդ: Վորովհետև աշխատող-
ների ընտրության բոլշևիկյան կանոնը բա-
ցառում է ընտանեկան-քաղքենիական
մոտեցման հնարավորությունը, բացառում
է աշխատողներին ընտանեկանության ու
արտելայնության հատկանիշներով ընտրե-
լու հնարավորությունը: Բացի դրանից,
վորպես աշխատողներ ընտրելով անձնապես
նվիրված մարդկանց, այդ ընկերները, ըստ
յերևույթին, ցանկանում եյին իրենց հա-
մար ստեղծել վորոշ անկախության իրա-
դրություն, ինչպես տեղական մարդկանց
վերաբերմամբ, այնպես և Կուսակցության
Կենտկոմի վերաբերմամբ: Ցենթադրենք,
վոր ընկերներ Միրզոյանը և Վայնովը այս
կամ այն հանգամանքների շնորհիվ իրենց
այժմյան աշխատանքի վայրից կփոխադըր-
վեն վորևե այլ տեղեր: Ինչպե՞ս պետք է
նրանք վարվեն այդ դեպքում իրենց «պոչե-
րի» նկատմամբ: Միթե՞ նրանք պետք է
տեխպված լինեն այդ «պոչերը» նորից քաշ
տալ իրենց աշխատանքի նոր վայրերը:

Ահա թե ինչպիսի աբսուրդի յե հասցնում

աշխատողների ճիշտ ընտրության ու դասավորման բոլշևիկյան կանոնի խախտումը:

4. Ի՞նչ է նշանակում ստուգել աշխատողներին, ստուգել առաջադրանքի կատարումը:

Ստուգել աշխատողներին, այդ նշանակում է ստուգել նրանց ոչ թե նրանց խոստումներով ու դեկլարացիաներով, այլ նրանց աշխատանքի արդյունքներով:

Ստուգել առաջադրանքների կատարումը, այդ նշանակում է ստուգել դրանք ո՛չ միայն գրասենյակում և ո՛չ միայն ձևական հաշվետվություններով, այլ նախ և առաջ դրանք ստուգել աշխատանքի վայրում, կատարման փաստական արդյունքներով:

Հարկավո՞ր է արդյոք առհասարակ այդպիսի ստուգումը: Անկասկած, հարկավոր է: Հարկավոր է, նախ՝ այն պատճառով, որ միայն այդպիսի ստուգումն է հնարավորություն տալիս ճանաչել աշխատողին, որոշել նրա իսկական հատկությունները: Հարկավոր է, երկրորդ՝ այն պատճառով, որ միայն այդպիսի ստուգումն է հնարավորություն տալիս որոշելու գործադիր ապարատի արժանիքներն ու թերու-



թյունները: Հարկավոր է, երրորդ՝ այն պատճառով, որ միայն այդպիսի ստուգումն է հնարավորություն տալիս որոշելու իրենց՝ առաջադրանքների արժանիքներն ու թերությունները:

Որոշ ընկերներ կարծում են, թե մարդկանց ստուգել կարելի յե միայն վերևից,— յերբ ղեկավարներն իրենց ղեկավարած մարդկանց ստուգում են նրանց աշխատանքի արդյունքներով: Այդ ճիշտ չէ: Ստուգումը վերևից, իհարկե, հարկավոր է, որպես մարդկանց ստուգելու և առաջադրանքների կատարումն ստուգելու իրական միջոցներից մեկը: Բայց վերևից ստուգելը դեռ բնավ չի սպառում ստուգման ամբողջ գործը: Գոյություն ունի նաև մի այլ տեսակի ստուգում, ստուգում՝ ներքևից, յերբ մասսաները, յերբ ղեկավարվողներն ստուգում են ղեկավարներին, նշում են նրանց սխալները և մատնանշում են այդ սխալներն ուղղելու ճանապարհները: Այդ տեսակ ստուգումը մարդկանց ստուգելու ամենաիսկական յեղանակներից մեկն է հանդիսանում:

Կուսակցական մասսաներն իրենց ղեկավարներին ստուգում են ակտիվի ժողովնե-

րում, կոնֆերանսներում, համագումարներում, նրանց հաշվետվությունները լսելու միջոցով, թերությունները քննադատելու միջոցով, վերջապես այս կամ այն ղեկավար ընկերներին ղեկավար օրգանների մեջ ընտրելու կամ չընտրելու միջոցով: Դեմոկրատական ցենտրալիզմի ճշգրիտ կիրառումը կուսակցության մեջ, ինչպես այդ պահանջում է մեր կուսակցության կանոնադրությունը, կուսակցական օրգանների անպայման ընտրականությունը, թեկնածուներ առաջադրելու և թեկնածուների դեմ առարկելու իրավունքը, փակ քվեարկությունը, քննադատության ու ինքնաքննադատության ազատությունը,— այս բոլոր և դրանց նման միջոցառումներն անհրաժեշտ է կենսագործել ի միջի այլոց նրա համար, որպեսզի հեշտացվի կուսակցության ղեկավարների ստուգումն ու վերահսկողությունը կուսակցական մասսաների կողմից:

Անկուսակցական մասսաներն իրենց տնտեսավարներին, պրոֆմիութենական ու այլ ղեկավարներին ստուգում են անկուսակցական ակտիվներում, ամեն տեսակի մասսայական խորհրդակցություններում, որ-



տեղ նրանք լսում են իրենց ղեկավարների հաշվետվությունները, քննադատում են թերությունները և նշում են այդ թերությունների ուղղելու ճանապարհները:

Վերջապես ժողովուրդը երկրի ղեկավարներին ստուգում է Խորհրդային Միության իշխանության օրգանների ընտրությունների ժամանակ, ընդհանուր, հավասար, ուղղակի և գաղտնի քվեարկության միջոցով:

Խնդիրն այն է, որպեսզի վերևից ստուգելը միացվի ներքևից եկող ստուգման հետ:

5. Ի՞նչ է նշանակում կադրերին սովորեցնել նրանց սեփական սխալների վրա:

Լենինը սովորեցնում էր, որ կուսակցության սխալների բարեխիղճ բացահայտումը, այդ սխալներն առաջացնող պատճառների ուսումնասիրությունը և այդ սխալներն ուղղելու անհրաժեշտ ճանապարհների նշումը կուսակցական կադրերի ճիշտ ուսուցման ու դաստիարակման, բանվոր դասակարգի և աշխատավոր մասսաների ճիշտ ուսուցման ու դաստիարակման ամենաուղիղ միջոցներից մեկն է հանդիսանում: Լենինն ասում է.

«Քաղաքական կուսակցության վերա-

բերմունքը դեպի իր սխալները, կուսակցության լրջության և իր դասակարգի նկատմամբ ու աշխատավոր մասսաների նկատմամբ իր ունեցած պարտականությունները գործնականում կատարելու կարևորագույն ու ամենաճիշտ չափանիշներից մեկն ե: Բացահայտորեն խոստովանել սխալը, բացահայտել նրա պատճառները, վերլուծել այդ սխալը ծնող իրադրությունը, ուշադիր քննարկել սխալն ուղղելու միջոցները, ահա այս ե լուրջ կուսակցության հատկանիշը, ահա այս ե կուսակցության կողմից իր պարտականությունների կատարումը, ահա այս ե դասակարգի, իսկ ապա նաև մասսայի դաստիարակումը և ուսուցումը»:

Այդ նշանակում ե, վոր բոլշևիկների պարտականությունն ե հանդիսանում վոչ թե իրենց սխալների սքողումը, վոչ թե իրենց սխալների վերաբերյալ հարցից խուսափելը, ինչպես այդ լինում ե մեզ մոտ հաճախ, այլ իր սխալների ազնիվ ու բացահայտ խոստովանությունը, այդ սխալներն ուղղելու ճանապարհներն ազնվորեն ու բացահայ-



տորեն նշելը, իր սխալներն ազնվորեն ու բացահայտորեն ուղղելը:

Յես չեյի ասի, վոր շատերը մեր ընկերներից հաճույքով դիմեցին այդ գործին: Բայց բոլշևիկները, յեթե նրանք իսկապես ցանկանում են լինել բոլշևիկներ, պետք ե իրենց մեջ արիություն գտնեն բացե ի բաց խոստովանելու իրենց սխալները, բացահայտելու դրանց պատճառները, նշելու այդ սխալներն ուղղելու ճանապարհները, և դրանով ոգնելու կուսակցությանը կադրերին ճիշտ ուսուցում և քաղաքական ճիշտ դաստիարակություն տալու գործում: Վորովհետև միայն այս ուղու վրա, միայն բացահայտ ու ազնիվ ինքնաքննադատության իրադրության մեջ կարելի յե դաստիարակել իսկապես բոլշևիկյան կադրեր, կարելի յե դաստիարակել իսկական բոլշևիկյան լիդերներ:

Յերկու որինակ, վորոնք ցուցադրում են Լենինի դրույթի ճշտությունը:

Վերցնենք, որինակ, մեր սխալները կոլտնտեսային շինարարության ասպարեզում: Դուք պետք ե, վոր հիշեք 1930 թվականը, յերբ մեր կուսակցական ընկերները մտածում եյին գյուղացիության կոլտնտեսային

շինարարության փոխադրելու ամենաբարդ հարցը լուծել ինչ վոր մի 3—4 ամսվա ընթացքում, և յերբ Կուսակցության Կենտրոնական Կոմիտեն հարկադրված յեղավ հետ քաշել տարվող-վոգևորվող ընկերներին: Այդ ամենավտանգավոր ժամանակաշրջաններից մեկն եր մեր կուսակցության կյանքում: Սխալն այն եր, վոր մեր կուսակցական ընկերները մոռացել եյին կոլտնտեսային շինարարության կամավորության մասին, մոռացել եյին, վոր չի կարելի գյուղացիներին կոլտնտեսային ուղու վրա փոխադրել վարչարարական ճնշման միջոցով, մոռացել եյին, վոր կոլտնտեսային շինարարությունը պահանջում ե վոչ թե մի քանի ամսվա, այլ մի քանի տարվա մանրազնին ու մտածված աշխատանք: Նրանք մոռացել եյին այդ մասին և չեյին ուզում ընդունել իրենց սխալները: Դուք պետք ե, վոր հիշեք վոր Կենտկոմի ցուցումը հաջողությունների հետևանքով առաջացած գլխապտույտի մասին և այն մասին, վոր մեր տեղերի ընկերներն առաջ չվազեն, անտեսանելով ռեալ իրադրությունը,— սվիններով դիմավորվեց: Բայց դա Կենտկոմին հետ չպահեց այն բանից, վոր նա գնար հոսանքի դեմ և



մեր կուսակցական ընկերներին շրջեր ճիշտ ուղու վրա: Յեվ ի՞նչ: Այժմ բոլորի համար պարզ ե, վոր կուսակցությունը հասավ իր նպատակին, մեր կուսակցական ընկերներին շուռ տալով ճիշտ ուղու վրա: Այժմ մենք կոլտնտեսային շինարարության և կոլտնտեսային ղեկավարության ասպարեզում ունենք գյուղացիների միջից յելած տասնյակ հազարավոր հիանալի կադրեր: Այդ կադրերն աճել ու դաստիարակվել են 1930 թվականի սխալների վրա: Բայց մենք այժմ չեյինք ունենա այդ կադրերը, յեթե կուսակցությունն այն ժամանակ չգիտակցեր իր սխալները և ժամանակին չուղղեր դրանք:

Մի այլ որինակ, արդեն արդյունաբերական շինարարության բնագավառից: Յես նկատի ունեմ մեր սխալները Շախտիի վնասարարության շրջանում: Մեր սխալներն այն եյին, վոր մենք հաշվի չեյինք առել արդյունաբերության ասպարեզում մեր կադրերի տեխնիկական հետամնացության ամբողջ վտանգավորությունը, մենք հաշտվում եյինք այդ հետամնացության հետ և մտածում եյինք սոցիալիստական արդյունաբերական լայն շինարարությունը ծավա-

էր թշնամաբար տրամադրված մասնագետների օգնությամբ, մեր տնտեսական կադրերին դաստիարակելով բուրժուական մասնագետներին կից վատ կոմիսարների դերին: Դուք պետք է, որ հիշեք, թե մեր տնտեսական կադրերն այն ժամանակ ինչպիսի՜ դժկամությամբ էին խոստովանում իրենց սխալները, ինչպիսի՜ դժկամությամբ էին խոստովանում նրանք իրենց տեխնիկական հետամնացությունը և ինչ աստիճան դժվար էին յուրացնում նրանք «տեխնիկային տիրապետելու» լոզունգը: Յեվ ի՞նչ: Փաստերը ցույց են տալիս, որ «տեխնիկային տիրապետելու» լոզունգն ունեցավ իր ներգործությունը և տվեց իր հաջող արդյունքները: Այժմ մենք ունենք տասնյակ ու հարյուր հազարավոր բոլշևիկյան հիանալի տնտեսական կադրեր, որոնք արդեն տիրապետել են տեխնիկային և առաջ են մղում մեր արդյունաբերությունը: Բայց այդ կադրերը մենք այժմ չէինք ունենա, յեթե կուսակցությունը տեղի տար տնտեսավարների համառության առջև, որոնք չէին ցանկանում խոստովանել իրենց տեխնիկական հետամնացությունը, յեթե կուսակցությունը չգիտակցեր այն ժամանակ



իր սխալները և չուղղեր նրանց ժամանակին:

Վորոշ ընկերներ ասում են, թե նպատակահարմար չէ բացահայտորեն խոսել իրենց սխալների մասին, քանի որ սխալների բացահայտ խոստովանությունը կարող է մեր թշնամիների կողմից գնահատվել որպես մեր թուլությունը և կարող է օգտագործվել նրանց կողմից: Դրա՞նք դատարկ բաներ են, ընկերնե՛ր, կատարյալ դատարկ բաներ: Մեր սխալների բացահայտ խոստովանությունը և այդ սխալներն ազնվորեն ուղղելը, ընդհակառակը, կարող է միայն ուժեղացնել մեր կուսակցությունը, բարձրացնել մեր կուսակցության հեղինակությունը, բանվորների, գյուղացիների, աշխատավոր ինտելիգենցիայի աչքում, բարձրացնել մեր պետության ուժն ու հզորությունը: Իսկ այդ գլխավորն է, միայն թե մեզ հետ լինեն բանվորները, գյուղացիները, աշխատավոր ինտելիգենցիան, իսկ մնացածն ամենը լավ կլինի:

Մյուս ընկերներն ասում են, թե մեր սխալների բացահայտ խոստովանությունը կարող է հասցնել վոչ թե մեր կադրերի ու-

տուցման և ամրապնդման, այլ նրանց թուլացման ու քայքայման, թե մենք պետք է խնայենք ու պահպանենք մեր կադրերը, թե մենք պետք է խնայենք նրանց ինքնասիրությունն ու հանդստությունը: Դրա համար նրանք առաջարկում են սքողել մեր ընկերների սխալները, թուլացնել քննադատության ուժը, իսկ ե՛լ ավելի լավ կլինի, յեթե մենք անցնենք այդ սխալների կողքով: Այդպիսի դրույթը վոչ միայն արմատապես սխալ է, այլև վերին աստիճանի վտանգավոր, վըտանգավոր նախ և առաջ այն կադրերի համար, վորոնց ցանկանում են «խնայել» և «պահպանել»: Խնայել ու պահպանել կադրերին նրանց սխալներն սքողելու միջոցով, այդ նշանակում է հաստատապես կործանել հենց այդ կադրերին: Մենք, հաստատապես կործանած կլինեյինք մեր տնտեսային բոլշեվիկյան կադրերը, յեթե չբացահայտեյինք 1930 թվականի սխալները և այդ սխալների վրա չսովորեցնեյինք նրանց: Մենք հաստատապես կործանած կլինեյինք մեր արդյունաբերական բոլշեվիկյան կադրերին, յեթե մենք չբացահայտեյինք մեր ընկերների սխալները Շախտիի վնասա-



րարության ժամանակաշրջանում և այդ սխալների վրա չսովորեցնեյինք մեր արդյունաբերական կադրերին: Նա, ով մտածում է խնայել մեր կադրերի ինքնասիրությունը՝ նրանց սխալներն սքողելու միջոցով, նա կործանում է և՛ կադրերին, և՛ կադրերի ինքնասիրությունը, քանի վոր նա այդ կադրերի սխալներն սքողելով հեշտացնում է նոր, գուցե ե՛լ ավելի լուրջ սխալների կրկնությունը, վորոնք, պետք է յենթադրել, վոր կհասցնեն կադրերի լիակատար տապալման ի վնաս նրանց «ինքնասիրության» և «հանդստության»:

6. Լենինը մեզ ուսուցանում եր վոչ միայն սովորեցնել մասսաներին, այլև սովորել մասսաներից:

Ի՞նչ է նշանակում այդ:

Այդ նշանակում է, նախ՝ վոր մենք, ղեկավարներս, չպետք է մեծամտանանք և պետք է հասկանանք, վոր յեթե մենք կենտկոմի անդամներ կամ ժողկոմներ ենք, ապա այդ դեռ չի նշանակում, վոր մենք տիրապետում ենք այն բոլոր գիտելիքներին, վորոնք անհրաժեշտ են ճիշտ ղեկավարելու համար: Աստիճանն ինքնին գիտելիքներ և փորձ չի տալիս: Կոչումը՝ առավել ևս:

Այդ նշանակում է, երկրորդ՝ որ հենց միայն մեր փորձը, ղեկավարների փորձը դեռ բավական չէ ճիշտ ղեկավարելու համար, որ հետևապես անհրաժեշտ է մեր փորձը, ղեկավարների փորձը լրացնել մասսաների փորձով, կուսակցական մասսաների փորձով, բանվոր դասակարգի փորձով, ժողովրդի փորձով:

Այդ նշանակում է, երրորդ՝ ոչ մի րոպե չթուլացնել, իսկ առավել ևս չխզել մեր կապերը մասսաների հետ:

Այդ նշանակում է, չորրորդ՝ զգայուն կերպով ունկնդրել մասսաների ձայնին, կուսակցության շարքային անդամների ձայնին, այսպես կոչված «փոքր մարդկանց» ձայնին, ժողովրդի ձայնին:

Ի՞նչ է նշանակում ճիշտ ղեկավարել:

Այդ բնավ չի նշանակում նստել գրասենյակում և դիրեկտիվներ գրել: Ճիշտ ղեկավարել— այդ նշանակում է.

Առաջինը՝ գտնել հարցի ճիշտ լուծումը: Իսկ ճիշտ լուծում գտնելն անհնարին է առանց մասսաների փորձի հաշվառման, մասսաների, որոնք իրենց սեփական մեջքի վրա փորձում են մեր ղեկավարության արդյունքները:



Երկրորդ՝ կազմակերպել ճիշտ որոշման կենսագործումը, որը սակայն չի կարելի կատարել առանց մասսաների կողմից ուղղակի օգնություն ստանալու:

Երրորդ՝ կազմակերպել այդ որոշման կատարման ստուգումը, որ դարձյալ հնարավոր չէ կատարել առանց մասսաների ուղղակի օգնության:

Մենք, ղեկավարներս՝ իրերը, դեպքերը, մարդկանց տեսնում ենք միայն մեկ կողմից, ես կասեյի— վերևից, մեր տեսողության դաշտը, նշանակում է ավելի կամ պակաս չափով սահմանափակ է: Մասսաները, ընդհակառակը, իրերը, դեպքերը, մարդկանց տեսնում են մյուս կողմից, ես կասեյի՝ ներքևից, նրանց տեսողության դաշտը նույնպես, նշանակում է, որոշ չափով սահմանափակ է: Հարցի ճիշտ լուծում ստանալու համար պետք է միացնել այդ յերկու փորձերը: Միայն այդ դեպքում ղեկավարությունը կլինի ճիշտ:

Ահա թե ինչ է նշանակում ոչ միայն սովորեցնել մասսաներին, այլև սովորել մասսաներից:

կու օրինակ, վորոնք ցուցադրում են
ի այդ դրույթի ճիշտ լինելը:
սրանից մի քանի տարի առաջ էր:
, Կենտկոմի անդամներս, քննարկում
Դոնբասում դրությունը բարելավելու
։ Ձեռնարկումների այն նախագիծը,
ներկայացրել էր Ծանր Արդյունաբե-
ան ժողկոմատը, բացահայտորեն ան-
րար էր: Յերեք անգամ նախագիծը
ղարձրինք Ծանր Արդյունաբերության
ոմատ, յերեք անգամ Ծանր Արդյունա
թյան ժողկոմատից ստացանք տար-
ախագծեր... Յեվ, այնուամենայնիվ,
արելի դրանք համարել բավարար:
սպես մենք վորոշեցինք Դոնբասից հր-
րել մի քանի բանվորների և չարքային
ավարների ու պրոֆմիութենական աշ-
ողների: Յերեք օր մենք զրուցում է-
այդ ընկերների հետ: Յեվ մենք բո-
Կենտկոմի անդամներս, պետք է
ովանեյինք, վոր միայն նրանք, այդ
ային աշխատողները, այդ «փոքր
իկ» կարողացան հուշել մեզ
վորոշում: Դուք պետք է, վոր
Կենտկոմի յեվ ժողկոմ-
ի հայտնի վորոշումը Դոնբասում ած-



անուլթին ուժեղացնելու միջոցառում-
մասին: Յեվ ահա, Կենտկոմի և ժող-
որհի այդ վորոշումը, վորը մեր բոլոր
ների կողմից ընդունված է իբրև ճիշտ
յնիսկ հուշակավոր վորոշում, մեզ հու-
յին ներքևից յեկած հասարակ մար-

այլ օրինակ: Յես նկատի ունեմ ընկեր
լայենկոյի օրինակը: Ո՞վ է Նիկոլայեն-
Նիկոլայենկոն—կուսակցության չար-
անդամ է: Նա սովորական «փոքրիկ
է»: Մի ամբողջ տարի նա ազդանշան
ր տալիս Կիևի կուսակցական կազմա-
ության մեջ դրությունն անբարե-
լինելու մասին, մերկացնում էր ըն-
կանությունը, քաղքենիական-ոբիվա-
կան մոտեցումը դեպի աշխատողնե-
նքնաքննադատության ճնշումը, տրոց
ական վնասարարների դերուժությու-
րանից խուսափում էյին, ինչպես ան
անճից: Վերջապես նրանից ազատվե-
ամար վերցրին և նրան վտարեցին կու
ությունից: Վո՛չ Կիևի կազմակերպու-
ը, վո՛չ Ուկր. Կ(բ)Կ Կենտկոմը չօգ-
նրան հանելու ճշմարտության:
Կուսակցության Կենտրոնական Կո-

...նի միջամտությունն օգնեց բաց անե-
...այդ խճճված հանգույցը: Իսկ ի՞նչ
...րզվեց գործը քննելուց հետո: Պարզվեց,
...Նիկոլայենկոն իրավացի յե յեղել, իսկ
...ի կազմակերպությունը յեղել է անիրա-
...ի: Վո՛չ ավելի, վո՛չ պակաս: Իսկ ո՞վ
...Նիկոլայենկոն: Նա, իհարկե, Կենտկոմի
...դամ չէ, ժողկոմ չէ, նա Կիևի մարզային
...մակերպության քարտուղարը չէ, նա
...ընիսկ վորևէ բջջի քարտուղար էլ չէ,
...կուսակցության սոսկ հասարակ շար-
...յին անդամ է:
...ինչպես տեսնում եք, հասարակ մարդիկ
...րեմն շատ ավելի մոտիկ են լինում ճըշ-
...մարտությանը, քան թե վորոշ բարձրադաս
...մնարկներ:
...Կարելի յե բերել դարձյալ տասնյակ ու
...րյուրավոր այսպիսի օրինակներ:
Այսպիսով, դուրս է գալիս, վոր մեր գոր-
...ը ղեկավարելու համար հենց միայն մեր
...փորձը, ղեկավարների փորձը դեռ բնավ բա-
...վարար չէ: Ճիշտ ղեկավարելու համար ան-
...հրաժեշտ է ղեկավարների փորձը լրացնել
...ուսակցական մասսայի փորձով, բանվոր
...դասակարգի փորձով, աշխատավորների



փորձով, այսպես կոչված «փոքր մարդկանց» փորձով,

Իսկ յե՞րբ է այդ հնարավոր:

Այդ հնարավոր է միայն այն դեպքում, յեթե ղեկավարները մասսաների հետ կապված են ամենասերտ կերպով, յեթե նրանք կապված են կուսակցական մասսաների հետ, բանվոր դասակարգի հետ, գյուղացիության հետ, աշխատավոր ինտելիգենցիայի հետ:

Կապը մասսաների հետ, այդ կապի ամրապնդումը, մասսաների ձայնին ունկընդրելու պատրաստակամությունը— ահա թե ինչի մեջ է բոլշևիկյան ղեկավարության ուժն ու անպարտելիությունը:

Կարելի յե վորպես կանոն ընդունել, վոր քանի բոլշևիկները կապ են պահպանում ժողովրդի լայն մասսաների հետ, նրանք կլինեն անպարտելի: Յեվ, ընդհակառակը, բավական է միայն, վոր բոլշևիկները կտրվեն մասսաներից և կորցնեն նրանց հետ ունեցած կապը, բավական է միայն, վոր նրանք ծածկվեն բյուրոկրատական ժանգով, վորպեսզի նրանք զրկվեն ամեն ուժից և վերածվեն դատարկ մի բանի:

Հին հույներն իրենց միֆոլոգիայի սիստեմում ունեյին մի հռչակավոր հերոս—

Անթեյը, վորին ինչպես ասում է միֆոլոգիան, յեղել է ծովերի աստված Պոսեյդոնի և հողի աստվածուհի Գեյայի վորդին: Նա հատկապես կապված էր զգում իր մոր հետ, վորը ծնել էր նրան, կերակրել և դաստիարակել: Չկար այնպիսի հերոս, վորին նա, այդ Անթեյը չհաղթեր: Նա համարվում էր անպարտելի հերոս: Ինչո՞ւմն էր կայանում նրա ուժը: Այդ ուժը կայանում էր նրա մեջ, վոր ամեն անգամ, յերբ հակառակորդի դեմ մղած պայքարում նա նեղն էր ընկնում, դիպչում էր գետնին, իր մորը, վորը ծնել ու կերակրել էր նրան և նոր ուժ էր ստանում: Բայց նա, այնուամենայնիվ, ուներ իր թույլ տեղը — այդ վորևէ կերպ հողից կտրված լինելու վտանգն էր: Թշնամիները հաշվի էյին առնում նրա այդ թուլությունը և դարանակալում էյին նրան: Յեվ ահա, գտնվեց մի թշնամի, վորն ոգտագործեց նրա այդ թուլությունը և հաղթեց նրան: Դա Հերկուլեսն էր: Բայց Հերկուլեսն ի՞նչպես հաղթեց նրան: Նա Անթեյին կտրեց գետնից, բարձրացրեց ոդի մեջ, խլեց նրանից հողին դիպչելու հնարավորությունը և այդպիսով ոդի մեջ խեղդեց նրան:



Յես կարծում եմ, վոր բոլշևիկները մեզ հիշեցնում են հունական միֆոլոգիայի հերոս Անթեյին: Նրանք նույնպես, ինչպես և Անթեյն ուժեղ են նրանով, վոր կապ են պահպանում իրենց մոր հետ՝ մասսաների հետ, վորոնք ծնել, սնել և դաստիարակել են նրանց: Յեվ քանի նրանք կապ են պահպանում իրենց մոր հետ, ժողովրդի հետ, նրանք բոլոր յերաշխիքներն ունեն, անպարտելի մնալու համար:

Սրա մեջ է բոլշևիկյան ղեկավարության անպարտելիության բանալին:

7. Վերջապես դարձյալ մեկ հարց: Յես նկատի ունեմ մեր վորոշ կուսակցական ընկերների ձևական ու անհոգի-բյուրոկրատական վերաբերմունքը դեպի կուսակցության առանձին անդամների բախտը, դեպի կուսակցության անդամներին կուսակցությունից վտարելու հարցը, կամ թե դեպի վտարվածներին կուսակցության անդամի իրավունքների մեջ վերականգնելու հարցը: Բանն այն է, վոր մեր վորոշ կուսակցական ղեկավարներ տառապում են մարդկանց նկատմամբ, կուսակցության անդամների նկատմամբ, աշխատողների նկատմամբ ուշադրության բացակայությամբ: Ավելին, նր-

րանք չեն ուսումնասիրում կուսակցության անդամներին, չգիտեն ինչո՞վ են ապրում նրանք և ինչպես են նրանք աճում, առհասարակ չեն ճանաչում աշխատողներին: Ուստի նրանք անհատական մոտեցում չունեն դեպի կուսակցության անդամները, դեպի կուսակցության աշխատողները: Յեվ հենց այն պատճառով, վոր նրանք անհատական մոտեցում չունեն կուսակցության անդամների և կուսակցական աշխատողների գնահատման ժամանակ, նրանք սովորաբար գործում են ինչպես պատահի— կամ անհիմն կերպով առանց վորևե չափի գովաբանում են, կամ թե նույնպես անհիմն կերպով և առանց վորևե չափի խարազանում են նրանց, վտարում են կուսակցությունից հազարներով ու տասնյակ հազարներով: Այդպիսի ղեկավարներն առհասարակ աշխատում են մտածել տասնյակ հազարներով, առանց հոգ տանելու «միավորների» մասին, կուսակցության առանձին անդամների մասին, նրանց բախտի մասին: Հազարավոր ու տասնյակ հազարավոր մարդկանց կուսակցությունից վտարելը նրանք համարում են դատարկ գործ, իրենց մխիթարելով այն բանով, թե մեր կուսակցության



ունի յերկու միլիոն անդամ և տասնյակ հազարավոր վտարվածները չեն կարող վորևե բանով փոխել դրությունը կուսակցության մեջ: Բայց այդպես կարող են մտածել կուսակցության անդամներին միայն ըստ եյության խորապես հակակուսակցական մարդիկ:

Մարդկանց նկատմամբ, կուսակցության անդամների և կուսակցական աշխատողների նկատմամբ այդպիսի անհոգի վերաբերմունքի հետևանքով, կուսակցության մեկ մասի մեջ արհեստականորեն ստեղծվում է դժգոհություն ու չարություն, իսկ տրոցկիստական յերկերեսանիները ճարպիկ կերպով իրենց ճանկն են գցում այդպիսի չարացած ընկերներին և նրանց իրենց հետևից հմտորեն քաշ են տալիս տրոցկիստական վնասարարության ճահիճը:

Ինքնին տրոցկիստները յերբեք մեծ ուժ չեն ներկայացրել մեր կուսակցության մեջ: Հիշեցեք մեր կուսակցության մեջ տեղի ունեցած վերջին դիսկուսիան 1927 թվականին: Այդ իսկական կուսակցական ռեֆերենդում եր: Կուսակցության 854 հազար անդամից այն ժամանակ քվեարկեց կուսակցության 730 հազար անդամ: Դրանցից բոլ

չեկների ոգտին, կուսակցության կենտրոնական կոմիտեյի ոգտին՝ ընդդեմ տրոցկիստների՝ քվեարկեցին կուսակցության 724 հազար անդամ: Տրոցկիստների ոգտին՝ կուսակցության 4 հազար անդամ, այսինքն մոտավորապես կես տոկոսը և ձեռնպահ մնացին կուսակցության 2600 անդամ: Քվեարկությանը չմասնակցեցին կուսակցության 123 հազար անդամ: Նրանք չմասնակցեցին կամ այն պատճառով, որ շրջագայության մեջ էին գտնվում, կամ թե այն պատճառով, որ գտնվում էին հերթափոխերում: Յեթե տրոցկիստների ոգտին քվեարկած 4 հազար հոգու վրա ավելացնենք բոլոր ձեռնպահ մնացածներին, յենթադրելով, որ նրանք նույնպես համակրում էին տրոցկիստներին և յեթե այդ գումարին ավելացնենք ոչ թե քվեարկությանը չմասնակցած կես տոկոսը, ինչպես այդ պետք եր անել ըստ կանոնի, այլ չմասնակցողների հինգ տոկոսին, այսինքն կուսակցության մոտ 6 հազար անդամի, ապա կստացվի կուսակցության մոտ 12 հազար անդամ, որոնք այս կամ այն կերպ համակրում էին տրոցկիզմին: Ահա ձեզ՝ պարոնայք տրոցկիստների ամբողջ ուժը: Դրան



ավելացրեք այն հանգամանքը, որ այդ
ծվին պատկանողներից շատերը հրաժարվեցին տրոցկիզմից ու հեռացան նրանից և
ըուք պատկերացում կստանաք տրոցկիստական ուժերի չնչինության մասին: Յեվ
յեթե, չնայած դրան, տրոցկիստական մնա
ւարարները, այնուամենայնիվ, որոշ ռեզերվներ ունեն մեր կուսակցության մոտերքում, ապա դա այն պատճառով, որ կուսակցությունից վտարելու և վտարվածների վերականգնման հարցում, մեր որոշ ընկերների սխալ քաղաքականությունը, մեր որոշ ընկերների անհոգի վերաբերմունքը դեպի կուսակցության առանձին անդամների ու առանձին աշխատողների բախտը, արհեստականորեն աճեցնում են դժգոհների ու չարացածների քանակությունը և այդպիսով տրոցկիստների համար ստեղծում են այդ ռեզերվները:

Վտարում են մեծ մասամբ այսպես կոչված պասսիվության համար: Ի՞նչ բան է պասսիվությունը: Բանից դուրս է գալիս, գտնում են, որ յեթե կուսակցության անդամը չի յուրացրել կուսակցության ծրագիրը, ապա նա պասսիվ է և յենթակա է վտարման: Բայց չէ՞ որ այդ սխալ է, ըն-

երնե՛ր։ Չի կարելի, վերջապես, այդպես տառակերությամբ մեկնաբանել մեր կուսակցության կանոնադրությունը։ Կուսակցության ծրագիրը յուրացնելու համար պետք է լինել իսկական մարքսիստ, ստուգված ու տեսականորեն պատրաստված մարքսիստ։ Ես չգիտեմ մեզ մոտ շա՞տ կլինեն արդյոք կուսակցության այնպիսի անդամներ, որոնք արդեն յուրացրել են մեր ծրագիրը, դարձել են իսկական մարքսիստներ, տեսականորեն պատրաստված և ստուգված։ Յեթե առաջ գնալու լինենք այդ ուղիով, ապա մենք ստիպված կլինեինք կուսակցության մեջ թողնել միայն ինտելիգենտներին և առհասարակ գիտնական մարդկանց։ Ո՞ւմ է պետք այդպիսի կուսակցություն։ Մենք ունենք կուսակցության անդամության մասին ստուգված և բոլոր փորձություններին դիմացած լենինյան ֆորմուլ։ Այդ ֆորմուլի համաձայն կուսակցության անդամ համարվում է նա, ով ընդունում է կուսակցության ծրագիրը, մուծում է անդամավճար և աշխատում է նրա կազմակերպություններից մեկում։ Ուշադրություն դարձրեք. լենինյան ֆորմուլի մեջ խոսվում է ոչ թե ծրագրի յուրացման մասին, այլ ծրագրին



ընդունելու մասին։ Սրանք երկու միանգամայն տարբեր բաներ են։ Ապացուցելու կարիք անգամ չկա, որ այստեղ իրավացի է Լենինը և ոչ թե մեր այն կուսակցական ընկերները, որոնք դատարկ տեղը շաղակրատում են ծրագրի յուրացման մասին։ Յեվ այդ հասկանալի է։ Յեթե կուսակցությունը ելներ այն բանից, որ կուսակցության անդամ կարող են լինել միայն այնպիսի ընկերներ, որոնք արդեն յուրացրել են ծրագիրը և դարձել են տեսականորեն պատրաստված մարքսիստներ, ապա նա կուսակցության մեջ չէր ստեղծի հազարավոր կուսակցական խմբակներ, հարյուրավոր կուսակցական դպրոցներ, որտեղ կուսակցության անդամներին սովորեցնում են մարքսիզմը և օգնում են նրանց յուրացնելու մեր ծրագիրը։ Միանգամայն պարզ է, որ յեթե կուսակցությունն այդպիսի դպրոցներ ու խմբակներ է կազմակերպում կուսակցության անդամներից, ապա այդ նրա համար, որ նա գիտե, որ կուսակցության անդամները դեռ չեն կարողացել յուրացնել կուսակցության ծրագիրը, դեռ չեն կարողացել դառնալ տեսականորեն պատրաստված մարքսիստներ։

Հետևաբար կուսակցության անդամու-
յան և կուսակցությունից վտարելու հար-
ում մեր քաղաքականությունն ուղղելու
ամար անհրաժեշտ է վերջ դնել պասսիվու-
յան հարցի ներկայիս քյալլադյողական
եկնաբանությանը:

Բայց մենք մի այլ մեղք ևս ունենք այդ
ասպարեզում: Բանն այն է, վոր մեր ըն-
րները չեն ընդունում յերկու ծայրահե-
ությունների միջինը: Բավական է միայն
ր բանվորը, կուսակցության անդամը մի
եթե դանցանք կատարի, 1—2 անդամ ու-
նա կուսակցական ժողովից, վորևէ պատ
տով չմուծի անդամավճարը, վորպեսզի
ան մի ակնթարթում դուրս վռնդեն կու-
սակցությունից: Չեն հետաքրքրվում նրա
նցանքի պատճառով, ժողովին չներկա-
նալու պատճառով, անդամավճարը չմու-
ծելու պատճառով: Բյուրոկրատիզմն այդ
րցերի մեջ ուղղակի չտեսնված է: Դըժ-
ար չէ հասկանալ, վոր հենց այդպիսի ան-
դի քաղաքականության հետևանքով եր,
ր կուսակցությունից դուրս շպրտվեցին
անալի կադրային բանվորներ, սքանչելի
ափոխականներ: Իսկ մի՞թե չէր կարե-
նախքան նրանց կուսակցությունից վտա



ել նրանց նախազգուշացում անել,
թե այդ չի ոգնում — ի ցույց դնել,
մ թե նկատողություն անել: Յեվ յեթե
ևս չի ոգնում— ժամկետ սահմանել
ղղվելու համար կամ ծայրահեղ դեպքում
խադրել թեկնածու, բայց վոչ թե մեկ
րվածով վտարել կուսակցությունից:
ւհարկե, կարելի յեր: Բայց դրա համար
ահանջվում է ուշադիր վերաբերմունք
րդկանց նկատմամբ, կուսակցության
դամների նկատմամբ, կուսակցության
դամների բախտի նկատմամբ: Բայց
դ էլ հենց պակասում է մեր վորոշ ընկեր
րին:

ժամանակն է, ընկերներ, վաղուց ժամա-
կն է վերջ դնելու այդ խայտառակությա
(ծափահարություններ):



Ծարունակվում է 1937 թ.
բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ

Հ Կ (բ) Կ Կենտկոմի կուլտպրոպագանդայի
և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . . 6 ռուբ.
6 » . . . 3 »
3 » . . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝

„Սոյուզպեչատ“-ի քաղաքային, շրջանային
բյուրոներին և փոստի բաժանմունքներին։